# Տարեմուտ

Լ. ԴՈՒՐՅԱՆ

Օրացույցի փոքրիկ թերթիկ,
Քեզ պոկելիս ձեռքս դողաց...
Գնաց տարին, այն մեծ տարին,
Գնաց, հետքը Լուսնին թողած:

Գնաց տարին, նման տարի
Մենք տեսնելու բախտ ունեցանք,
Բայց նա մնաց, որպես դարի
Նոր խոյանքի արևածագ:

Եվ այս տարին, որ նոր ծնվեց
Ժամացույցի վերջին զարկից,
Պիտի շողա ավելի մեծ՝
Ոլորտներում տիեզերքի:

Անցած տարին Լուսնին իջավ.
Այս նոր տարին կիջնի Մարսին,
Ու կփովի շողատարած
Ճառագումը- մեր երազի:

Նորից եկել է նոր տարին
Ու եկել է երգի պես վառ,
Փշրվել են աստղերն ասես,
Փաթիլ-փաթիլ թափվում են վար:

Նկ. Ռ. ԱԹՈՅԱՆԻ

№ 1 1960 թ.
ՀՈՒՆՎԱՐ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



# ԿԱՊՈՒՅՏ ԵՐԿՆՔԻ ՈՒ ԿՈՐԱԾ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ռ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Միքայելը երբեք իրեն հաշիվ չէր տվել. արդյոք լա՞վ աղջիկ է Սեդան: Պարզապես ընկերություն էր անում: Դե, մի բակում էին ապրում, և այնտեղ ուրիշ հասակակիցներ համարյա չունեին, միևնույն դասարանում էլ սովորում էին...

Նրանց բակը Երևանի հին բակերից էր, որը գտնվում էր Կոնդ կոչվող թաղամասում: Բակում մի հին ցածլիկ շինություն կար, որը մի ժամանակ գոմ էր եղել, իսկ հիմա ծառայում էր որպես ցախատուն: Ա՛յ, հենց այդ ցախատան կտուրը դեռ շատ փոքրուց Սեդայի ու Միքայելի ամենասիրած տեղն էր:

Փոքր ժամանակ նրանք չէին նկատել, թե որքան լավ տեսարան էր բացվում այդտեղից: Իսկ հիմա ասես հասակ առնելու հետ միասին, շարունակ նորանոր հետաքրքրական բաներ էին նկատում: Ամբողջ քաղաքն էր երևում այդտեղից:

Մի անգամ, երբ երկար ժամանակ լուռ նստած էին, հանկարծ Սեդան ասաց.

— Միքայել, մի նայիր, տե՛ս, թե այստեղից, այ այսպես նայելիս, ինչքա՜ն գեղեցիկ է երևում երկինքը...

Միքայելը նայեց և իսկապես ինքն էլ զարմացավ, թե ինչպես մինչև հիմա չէր նկատել:

Ամռան երկինքը կեսօրից հետո, իսկապես որ շատ գեղեցիկ էր:

Դա մի զարմանալի գեղեցկություն էր, որը ոչ մի կերպ չես կարողանա նկարագրել:

. . . . . . . . . . .

յին, բայց չգիտես ինչու, քաշվում էր:

Մտածելու բաներ, թե՛ Սեդան, թե՛ Միքայելը շատ ունեին: Այս տարի նրանք վերջացրել էին յոթնամյակը և իրենց զգում էին միանգամից անչափ մեծացած:

Այդ օրը հատկապես, երբ նկատվեց, թե որքան գեղեցիկ է կապույտ ու ջինջ ամառային երկինքը, Միքայելն ավելի հաստատուն մտածեց, որ շատ լավ կլինի, եթե հնարավորին չափ շուտ ոտք դնի ինքնուրույն կյանքի ճամփին:

Երկար-երկար լռելուց հետո, վերջիվերջո նա իր մտքերը որոշեց կիսել Սեդայի հետ:

— Գիտես ի՞նչ, Սեդա,—հանկարծ խոսեց նա,—երբ մտածում եմ, որ դեռ երեք տարի էլ պետք է սովորեմ ու նոր միայն ծնողներիս ազատեմ ինձ պահելու հոգսից, մի տեսակ... դե հասկանո՞ւմ ես... ես ուզում եմ... դե, դու պետք է որ հասկանաս...

— Հասկանում եմ,—անմիջապես արձագանքեց նրան Սեդան:

Սեդան ու Միքայելը շատ արագ էին միմյանց հասկանում:

— Է, լավ,—շարունակեց Սեդան, հետո՞, ի՞նչ ես մտադիր անել... Հո չե՞ս կարող վերջ տալ սովորելուն:

— Չէ, իհարկե՛, բայց համ էլ ուզում եմ աշխատել...

Սեդան լավ գիտեր, որ Միքայելենց ընտանիքը ...ականին մեծ էր, Միքայելը տան ամենամեծ ...ակն էր, իսկ աշխատում էր միայն նրա հայրը:

— Բայց դե, դու դեռ փոքր ես, ի՞նչ աշխա...ք կարող ես կատարել,—անվճռականորեն, ...ատելով ընկերոջ ինքնավստահությունը չվի...որել, խոսեց Սեդան:

— Ե՞ս եմ փոքր, ես ո՞ւժ չունեմ, ինչ է,—խո... Միքայելն ու ակամայից ինքն էլ նայեց իր

ամուր, զարգացած թևերին և անմիջապես այդ հայացքի համար ամաչեց։

Բայց Սեդան համարյա հիացմունքով էր նայում նրան։

— Իհարկե, ես ճիշտ չասացի, դու շատ ուժեղ ես, երանի քեզ…

Ընկերոջ գովասանքը թև տվեց ու ավելի ոգևորեց Միքայելին։

— Ես հենց վաղվանից,— խոստացավ նա,— այդ ուղղությամբ կաշխատեմ։

Սեդան շարունակում էր նայել նրան հիացմունքով։ Աղջկա աչքում այդ օրը Միքայելը միանգամից, մի ամբողջ գլխով մեծացել էր։

Դրանից հետո, մի քանի օր շարունակ, Միքայելը ցերեկները երկար ժամերով անհետանում էր։ Միայն Սեդան գիտեր, թե ուր է գնում նա։ Միքայելը նրան խնդրել էր առայժմ ոչ որի ոչինչ չասել, Սեդան էլ, ի՞նչ ընկեր, որ չկարողանար ընկերոջ գաղտնիքը պահել…

Իսկ երեկոները, երբ Միքայելը վերադառնում էր, նրանք նստում էին իրենց սիրած կտուրի վրա ու զրուցում։

— Մի տեղ ասացին, թե փոքր եմ դեռ,— իրենց գործին հարմար չեմ, մի ուրիշ տեղ էլ խոստացան մի շաբաթից…

Սեդան նայում էր նրան հարգանքով, մտքում հազար ու հազար անգամ երանի տալով ընկերոջը, որն այդքա՜ն վճռականորեն, այդքա՜ն համարձակ կերպով արդեն փորձում էր աշխատանքային ինքնուրույն կյանք սկսել…

Մի օր էլ…

Վաղ առավոտից Միքայելը նորից անհետացել էր։ Եկավ երեկոյան դեմ, երբ մինչև անգամ տանեցիք արդեն կարգին անհանգստացել էին։ Եկավ և անմիջապես մորը հայտարարեց.

— Աշխատանքի եմ ընդունվել։

Դրանից հետո Միքայելը շատ քիչ ժամանակ էր ունենում։

Սեդան կարգին չէր էլ պատկերացնում նրա աշխատանքը, միայն գիտեր, որ նա աշխատում է ինչ-որ շատ մեծ, զարմանալի մեծ մի շինարարության վրա…

Հիմա նրանք ավելի շատ հանդիպում էին երեկոները։

— Դու մեծ կամքի ուժ ունես, դու շատ ուժեղ մարդ կդառնաս,— մի անգամ հիացմունքով ասաց Միքայելին Սեդան։

Միքայելը ոգևորված պատմում էր իր ապագայի ծրագրերն ու երազանքները…

— Համ էլ կսովորեմ… Հիմա աշխատողների համար սովորելու ավելի շատ պայմաններ կան։ Եվ ավելի հեշտ կընդունվեմ ինստիտուտ։

Սեդան նրան լսում էր հարգանքով, համարյա երկյուղածությամբ։ Չէ՛, ի՞նչ խոսք, Միքայելը ուժեղ է, վճռական, բայց…



* * *

Բայց… Դե, մենք ինչո՞վ ենք մեղավոր, որ այս պատմության մեջ էլ բայց կա։ Մենք սկզբից հո ամեն ինչ չէինք նախատեսել…

Միքայելն էլ շատ բան չէր նախատեսել։ Նա ի՞նչ իմանար, որ երազանքի ու գործի մեջ եղած տարբերությունն այդքան շատ, շատ է։ Ի՞նչ իմանար։ Լավ է դժվարությունների մասին երազելը։ Ուղղակի հաճելի է, պառկել քո սիրած կտուրի վրա, աչքերդ հառել ամառային սքանչելի երկնքին ու երազել։ Թեկուզ ամենադժվարին ու վտանգավոր բաների մասին։

Բայց թե…

Ամբողջ օրը պարապ, բոլորովին պարապ էր, իսկ



հիմա միանգամից օրական վեց ժամ աշխատանք... Ամեն օր նույն ժամին արթնացիր, շտապիր, որ չուշանաս... Հետո, չի էլ կարելի խելքիդ փչած ժամին գործը թողնել ու ցանկացածդ տեղը գնալ: Սա ոչ խաղ է և ոչ էլ քո քեֆին թափառել, այլ աշխատանք:

Այդ բոլորի մասին Սեդան ոչինչ չգիտեր, միայն տեսնում էր, որ Միքայելի սկզբնական խանդավառությունը նվազում է...

— Գիտես ի՞նչ, Սեդա,— մի օր էլ հայտնեց նա,— ճիշտն ասած, դե... դու կհասկանաս... Դե այս աշխատանքը մի տեսակ սրտովս չէ: Դե դու կհասկանաս...

Ասաց ու լռեց: Երբ նրանց հայացքները պատահաբար հանդիպեցին, Միքայելն զգաց, որ ընկերուհին թերահավատությամբ է նայում իրեն:

Ընդամենը երկու շաբաթից մի փոքր ավել էր, ինչ Միքայելն աշխատում էր: Արդեն քանի անգամ զանազան առիթներով և առանց առիթների ոչ միայն Սեդայի մոտ, այլև տանը նա արտահայտվել էր աշխատանքից հիասթափվելու մասին:

— Դու ասում էիր, այնտեղ քո հասակի մի քանի տղաներ էլ են աշխատում, բա նրանք ինչպե՞ս են,— հարցնում էին նրան...

— Դե նրանք... Այդ աշխատանքը նրանց սրտովն է, երևի սովոր են, իսկ ինձ այնքան էլ համապատասխան չէ:

* * *

Այդ օրը Միքայելը ճաշից հետո գնաց Սեդայենց տուն ու հայտարարեց.

— Սեդա, աշխատավարձ եմ ստացել և քեզ հրավիրում եմ կինո:

Գնացին: Հիանալի էր:

Բոլորովին ուրիշ է, երբ կինո ես գնում ծնողներիդ տված փողով և ուրիշ է, երբ քո վաստակով դեռ ընկերոջդ էլ ես հյուրասիրում: Ինքդ քեզ ավելի ես սկսում հարգել...

Հետո վերադարձան տրամվայով, և հենց տրամվայում էլ պատահեց այն սարսափելի դեպքը:

Նրանք հարթակում կանգնած խոսում էին, բաժանում կինոյի տպավորությունները, երբ Սեդան այլայլվեց ու շշնջաց.

— Միքայել, նայի՛ր...

Միքայելը նայեց աղջկա հայացքի ուղղությամբ:

Կես քայլ այն կողմ, դեմքով դեպի վագոնի խորքը, կանգնած էր հասակավոր մի մարդ, իսկ Միքայելին հասակակից մի տղա ձեռքը... Ազնի՛վ խոսք, այդ շատ պարզ տեսան թե՛ Միքայելը, և թե՛ Սեդան, ձեռքը տարել էր այդ մարդու գրպանը և քիչ էր մնում, որ գրպանից հաներ դրամապանակը...

— Միքայե՛լ, բռնիր նրան,— շշնջաց աղջիկը...

Եվ այստեղ Միքայելը բոլորովին անսպասելի, շշնջաց.

— Գործ չունես... Փորձանք... դու հասկանո՞ւմ ես... խուլիգան է, մեկ էլ տեսար...

Մի վայրկյան միայն նրանց հայացքները հանդիպեցին, և Միքայելը սարսափով զգաց այն խոր արհամարհանքը, որ արտահայտում էին ընկերուհու աչքերը, ապա ամեն ինչ կատարվեց այնքան արագ...

— Ձեռքդ քաշի՛ր, խուլիգա՛ն,— լսվեց տրամվայում Սեդայի սովորականից ավելի զրնգուն դարձած ձայնը: Սեդան անսպասելի արագությամբ բռնեց գողի թևից: Գողը շրջվեց, հրեց Սեդայի

ամեն կերպ ձգտելով դուրս պրծնել աղջկա ձեռքից: Վերջապես այդ նրան հաջողվեց: Նա ընթացքի ժամանակ իրեն դուրս գցեց տրամվայից, վերջին վայրկյանին Սեդայի հասցեին մի հիշոց արձակեց ու սպառնաց.

— Սպասի՛ր, դեռ քեզ կբռնեմ...

Այդ ամբողջ ժամանակ Միքայելն ասես ինչ-որ կախարդանքով քարացել էր...

Միքայելը կարգին չէր հասկանում, ինչ է կատարվում շուրջը: Նրա գիտակցությանը աղոտ կերպով ինչ-որ բառեր ու խոսակցություններ էին հասնում: Մի մարդ երկար շնորհակալություն էր հայտնում Սեդային, միաժամանակ արհամարհական հայացք գցելով Միքայելի վրա, իսկ հետո տեղ հասան...

Ամբողջ ճանապարհին լուռ քայլում էին և որքան մոտենում էին տանը, այնքան Միքայելի տագնապն ուժեղանում էր: Ոչ՛, այդպես լուռ տեղ հասնելը սարսափելի էր, հարկավոր էր ինչ-որ բան ասել:

— Սեդա,— խոսեց Միքայելը,— ախր դու իզուր...

— Մի՛ խոսիր,— համարյա թե գոռաց նրա վրա աղջիկը,— մի՛ խոսիր,— և նորից նրա ձայնը մի տեսակ փոխված էր, ասես լացակումած լիներ...

Երեկոն փչացավ...

Հաջորդ օրը երեկոյան Միքայելը մենակ բարձրացավ ցախատան կտուրը: Կիրակի չէր, բայց նախորդ օրն աշխատավարձը ստանալով, նա դուրս էր եկել աշխատանքից և այժմ ամբողջ օրն ազատ էր: Բարձրացավ կտուրը թե չէ, նրա աչքին ընկավ տետրակի մի թերթ: Նրա վրա մի փոքրիկ քար էր դրված, որպեսզի քամին չտանի:

Միքայելը վերցրեց ու կարդաց.

«Դու վախկոտ ես, թույլ ու անկամ: Ես մտածում էի, թե իրոք, երևի աշխատանքն այնքան էլ քեզ չի համապատասխանում, բայց դու պարզապես այնպիսին ես, որ վախենում ես դժվարություններից: Վախենում ես նաև փողոցային մի վախկոտ խուլիգանից, որը նույնիսկ ինձանից վախեցավ ու փախավ... Ես քեզ արհամարհում եմ...»

Երկինքն էլի առաջվա նման գեղեցիկ էր, հրաշալի: Բայց մի շատ մեծ, շատ թանկ բան չկար, ու կարծես երկնքի այդ անպատմելի ու աննկարագրելի գեղեցկությունն էլ զուրկ էր իմաստից:

Միքայելն այդպես երկար մնաց տեղում քարացած, անշարժ...

Նա մտածում էր կորած բարեկամի, կորած ընկերոջ մասին: Նրան վերադարձնելու, նրա վստահությունն ու հարգանքը նորից շահելու համար զգում էր, որ չկա աշխարհում դժվարություն ու վտանգ, որ հանձն չառնի...

## Ձյուն է իջել

Ձյուն է իջել, ձյուն է իջել,
Գյուղի ճամփան ծածկել, ջնջել:

Ձմեռն ահա իր պաղ ձեռքով
Ծուխ է մանում կտուրներին,
Ծառն է կքել... ոչ թե բեռքով.
Ձյուն է նստել մերկ ճյուղերին:

Չկա ծանոթ արահետը,
Որ գյուղի մոտ՝ ձորն է կնռվում,
Էլ չի խոսում, լուռ է գետը,
Մշուշվել է սարը հեռվում:

Ձյուն է իջել, ձյուն է իջել,
Գյուղի ճամփան ծածկել, ջնջել:

ԱԶԱՏ ԳԱՍՊԱՐՅԱՆ
Հոկտեմբերյան



Բ. ԵԶԴԱՆՅԱՆ

*(Բժշկի հուշատետրից)*

Ես տրոլեյբուս բարձրացա մոտ 12—13 տարեկան մի դպրոցականի հետ: Նստելու տեղերը զբաղված էին, բացի վերջին երկար նստարանից, որի վրա դեռ կարող էին տեղավորվել մի քանի հոգի: Ես նստեցի: Իմ օրինակին հետևեց նաև այդ պատանին՝ գրեթե զոռով խցկվելով իմ և հարևանուհուս՝ բավականին գեր մի տիկնոջ արանքը: Ես նայեցի պատանուն: Դա թուխ, կլոր դեմքով, սևաչյա մի տղա էր: Նրա շուրթերի արանքից երևում էին իրարից հեռու գտնվող վերին երկու, անսովոր մեծ կտրիչ ատամները:

Իմ ուշադիր հայացքից պատանին նկատելիորեն շփոթվեց, բայց երևի նկատելով, որ դեմքիս բարկության նշան չկար, նա ավելի հարմարեցրեց տեղը: Քիչ հետո մեր հայացքները նորից հանդիպեցին իրար: Տղան կարծես հենց դրան էր սպասում և դողդոջուն ձայնով հարցրեց.

— Դուք ինձ չե՞ք ասի, բժիշկ, վտանգավոր հիվանդություն է, արդյո՞ք, ֆիբրոմիոման:

Ես մի րոպե չիմացա ինչ պատասխանել նրան: Նկատելով այդ, պատանին շարունակեց.

— Ներեցեք, բժիշկ, ես Ձեզ գիտեմ մեր պոլիկլինիկայից, դուք մի անգամ էլ մեր տուն եք եկել, երբ տատիկս հիվանդ էր: Ես որոշել էի այսօր դասերից հետո գալ պոլիկլինիկա և իմանալ...

— Իսկ ո՞վ է հիվանդը,— ընդհատեցի նրան, նկատելով, որ դժվարանում է խոսքը շարունակել:

— Մայրս,— գրեթե շշուկով ասաց նա, նայելով չորս կողմը:

Ապա կարծես համոզվելով, որ մեր խոսակցության վրա ոչ ոք ուշադրություն չի դարձնում, ավելացրեց.

— Այդ մասին ես երեկ երեկոյան պատահմամբ իմացա: Տատիկս չնկատելով իմ ներկայությունը, լալիս էր և պատմում մեր հարևանուհուն:

Տրոլեյբուսը մոտենում էր այն կանգառին, որտեղ ես իջնելու էի:

— Ես պետք է իջնեմ, տղաս, աշխատանքից ուշանում եմ: Արի ինձ մոտ, պոլիկլինիկա, ժամը երկուսից հետո: Ես կլինեմ 7-րդ սենյակում, մենք մանրամասն կխոսենք այդ մասին:—Ապա շոյելով նրա գլուխը ավելացրի,—ուրեմն կսպասեմ, անհոգ եղիր, վտանգավոր ոչինչ չկա:

Այդ օրը հիվանդների ընդունելությունը համեմատաբար շուտ վերջացավ, սակայն ինձ չհաջողվեց տեսնել նրան: Սպասում էի պատանուն, երբ բուժքույրերից մեկը հայտնեց, որ գլխավոր բժշկի հետ միասին ժամը 2-ին պետք է լինեմ մինիստրությունում:

Մինիստրությունում խորհրդակցությունը բավական երկար տևեց: Վերջում ինձ հայտնեցին, որ վաղը կամ մի քանի օրով պետք է մեկնեմ մեր ռեսպուբլիկայի հյուսիսային շրջաններից մեկը կոնսուլտացիոն օգնության:

Խորհրդակցությունից հետո, ես որոշեցի ոտքով տուն գնալ և, օգտվելով հարմար առիթից, Ռուբիկի համար խանութից մի նոր շախմատ գնեցի: Այդ նվերով ուզում էի շնորհավորել Ռուբիկին՝ 6-րդ «ա» դասարանում առաջին տեղը գրավելու և 5-րդ ու 6-րդ դասարանների շախմատիստների մրցությունում ձեռք բերած հաջողության առթիվ:

Ռուբիկն այդ օրը պետք է խաղար իր վերջին խաղը՝ մրցության լիդեր Աշոտի հետ, որը 6-րդ «բ» դասարանի չեմպիոնն էր, և որից Ռուբիկը միայն կես միավորով էր հետ մնում: Հաղթության դեպքում Ռուբիկը կարող էր ընկնել առաջին տեղը, իսկ եթե չհաղթեր, կընկներ երկրորդ տեղը: Երեկ երեկոյան նրա տրամադրությունից ես զգացի, որ խաղը շահելու հույս չունի: Նա նույնիսկ ասաց, որ իր առաջին հանդիպումը Աշոտի հետ ավարտվել է ոչ ոքի, այն դեպքում, երբ Ռուբիկը խաղացել է սպիտակներով և խաղավերջում ունեցել է մեկ զինվորի առավելություն:

Երբ Ռուբիկը տան դուռը բացեց, ես նրան մեկնեցի թղթում փաթաթած իմ նվերը, սպասելով, որ նա շատ կուրախանա: Ռուբիկը ձայնից հասկացավ ինչ էր թղթում փաթաթված, շնորհակալություն հայտնեց, բայց իմ սպասածին հակառակ, առանց բացելու, մի կողմ դրեց: «Պարտվել է, մտածեցի ես,— առաջին պարտությունը այս տուրնիրում»: Ես շոյեցի նրա մազերը և ասացի.

— Մրցության մեջ երկրորդ տեղը գրավելն էլ լավ արդյունք է, Ռուբիկ ջան, դրա համար տրամադրությունը չեն գցի: Ես քեզ հետ գրեթե ամեն օր խաղում եմ և ամեն անգամ էլ զգում եմ, որ գնալով ավելի լավ ես խաղում:

Փոխելով հագուստս, անցա ճաշասենյակ, որտեղ ինձ, ըստ երևույթին, վաղուց սպասում էին:

— Հայրիկ, հայրիկ, ե՛կ այստեղ.— լսվեց ննջարանից Ալիսայի ձայնը, որին առավոտյան ես պատվիրել էի պառկել:

Դեռ ննջարանի դուռը չբացած, ես սկսեցի լսել փոքրերին յուրահատուկ բառերի տարափը: Նրա պատմածից ես հասկացա, որ Ռուբիկը այսօր տարել է շախմատի խաղը և առաջին տեղը գրավել, որ ավագ ջոկատավարուհին՝ ընկեր Գեղանուշը, ջոկատի շարքի առաջ շնորհավորել է 6-րդ «ա» դասարանի հաղթանակը և Ռուբիկին հանձնել չեմպիոնի համար նախապատրաստած նվերը՝ շախմատի խաղատուփ՝ փայլուն, մեծ ֆիգուրներով:

Տատիկը ավելացրեց, որ այդ բոլորի մասին Ռուբիկը՝ ինքը չի պատմել: Փողոցում նրա դասընկեր Միշիկն է պատմել մայրիկին, իսկ Ռուբիկի տրամադրությունը ընդհակառակը վատ է:

Երբ լվացվելուց հետո ես մոտեցա ճաշասեղանին, Ռուբիկը նստած էր իր տեղում, իսկ մայրիկը արդեն լցնում էր ճաշը: Տատիկը ննջարանում կերակրում էր Ալիսային:

— Մինչև այսօր ես չգիտեի, որ դու արտիստական լավ ձիրք էլ ունես, դիտմամբ տխուր ձևացար, որ ես կարծեմ խաղը տանուլ ես տվել, այդպես չէ՞,— հարցրեցի Ռուբիկին կատակով:

— Ո՛չ, հայրիկ, այդպես չէ,—պատասխանեց նա:

— Որոշել է այսուհետև, անգամ տանը, գաղտնապահ լինել,— կատակեց մայրիկը, ճաշի ափսեն դնելով նրա առաջ:



— Ինչ արտիստ, ի՜նչ գաղտնիք. ես ուղղակի այսօր մի մեծ սխալ եմ գործել, որի մասին կպատմեմ վաղը, երբ սխալս ուղղած կլինեմ,— պատասխանեց Ռուբիկը շատ վրդովված և, առանց գլուխը բարձրացնելու, սկսեց ճաշել:

Այդ երեկո Ռուբիկը սովորականից շուտ պառկեց քնելու:

* * *

Գործուղումից ես վերադարձա միայն տասը օր հետո:

Դեռ ճամպրուկը ձեռքիս և Ալիսան վզիցս կախված՝ կանգնած էի շեմքին, երբ սենյակից դուրս եկավ Ռուբիկը և նրա հետ մի պատանի: Հենց առաջին հայացքից ես ճանաչեցի Ռուբիկի ընկերոջը, դա տրոլեյբուսի իմ այն փոքրիկ, մոր հիվանդությամբ անչափ մտահոգված ուղեկիցն էր:

— Բարև, տղաս, ինչպե՞ս է մայրիկիդ առողջությունը:

Նրա փոխարեն ինձ պատասխանեց Ռուբիկը:

—Այսօր վիրահատման յոթերորդ օրն է, Աշոտը և ես հենց նոր ենք վերադարձել հիվանդանոցից: Բժշկուհին ասաց, որ նա իրեն շատ լավ է զգում: Բայց, հայրիկ, դու որտեղի՞ց գիտես Աշոտին:

— Այն բժիշկը, որի մոտ ես շտապում էի տուրնիրի մեր վերջին խաղի օրը՝ հիշու՞մ ես, ես քեզ պատմել եմ այդ մասին, բանից պարզվում է, որ քո հայրիկն է,—ժպտալով ասաց Աշոտը:

... Երեկոյան, երբ Ռուբիկը և Ալիսան արդեն քնած էին, տատիկն ու մայրիկը ինձ պատմեցին հետևյալը: Հենց քաղաքից մեկնելու օրը Ռուբիկը վերադարձրել է դպրոցում ստացած նվերը ավագ ջոկատավարուհուն և բացատրել, որ իր և Աշոտի խաղը պետք է համարել հետաձգված, քանի որ հենց խաղի սկզբից ինքը նկատել է, որ Աշոտը հուզված է, շտապում է ինչ-որ տեղ և անուշադիր է խաղում: Հետո սխալ գործելով, հանձնվել է անմիջապես:

— Ինձ պետք չէ առանց պայքարի հաղթանակը. դա պարտությունից էլ վատ է,- ասել է նա ջոկատավարուհուն:— Ես սա հասկացա միայն երեկ, երբ նվերը ձեռքիս տուն էի վերադառնում: Չէ՛ որ



Նկ. ՀՈՎՀ. ՄԻՆԱՍՅԱՆԻ

տանը ես պետք է պատմեի իմ հաղթանակի բոլոր մանրամասնությունները, իսկ ի՞նչ կարող էի ես պատմել...

Այդ օրվանից Աշոտն ու Ռուբիկը մտերմացել են և դարձել անբաժան ընկերներ:

* * *

Մյուս օրը, երբ ես երեկոյան գրասեղանիս մոտ նստած աշխատում էի, Ռուբիկը մոտեցավ և վարանելով հարցրեց.

— Հայրի՛կ, երբ Աշոտի մայրիկը տուն վերադառնա, մենք չե՞նք գնա նրանց շնորհավորելու մայրիկի առողջանալու և նոր բնակարան ստանալու կապակցությամբ:

— Իհա՛րկե, կգնանք, ես և մայրիկդ արդեն մտածել ենք այդ մասին, — անմիջապես պատասխանեցի ես:

— Իսկ գիտե՞ս, հայրիկ, այսօր ես և Աշոտը որոշեցինք մեր հետաձգված խաղը խաղալ հենց այդ օրը, իրենց տանը և խնդրել քեզ, որ մեր դատավորը լինես:

— Խոսք եմ տալիս անաչառ դատավոր լինել,— կատակեցի ես ոտքի ելնելով, ապա շոյելով Ռուբիկի մազերը՝ շարունակեցի առանց կատակի.— Ապրե՛ս, տղաս, դու ճիշտ ես վարվել, կյանքում ազնիվ մարդկանց հաճույք և բավականություն է պատճառում միայն այն, ինչ սեփական աշխատանքով է ձեռք բերվում:

## ՁՄԵՌ

Ե. ԱՌԱՔԵԼՅԱՆ



Առուն լռել,
Քար է կտրել,
Չի կարկաչում, չի երգում.
Ծառերը մերկ
Անտես մի ձեռք
Օրորում է մեր այգում:
Իջնում է պաղ
Ձյունը խաղաղ,
Այնպես մարմանդ, երազուն,
Ձմեռ պապին
Մանուկներին
Մի նոր հեքիաթ է ասում:

# Ո՞Վ ՉԻ ՄՐՍՈՒՄ ՁՄՌԱՆԸ

Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

*Անցավ աշունը նորից,*
*Էլի ձմեռ, ցուրտ ձմեռ.*
*Ձյունը իջավ սարերից,*
*Եկավ-լցվեց բակը մեր:*

*Այ դու, վախկոտ իմ Չալանկ,*
*Ինչո՞ւ փախար քո բույնը.*
*Արի դուրս գանք ու խաղանք.*
*Տես, ինչ փափուկ է ձյունը:*

*Օդը մաքուր է այնքան,*
*Դուրս արի, շո՛ւտ, ինձ լսի,*
*Մի՛ վախենա, շնիկ ջան,*
*Ով որ խաղա, չի՛ մրսի:*



Նկ. Ս. ԱԶԻԶՅԱՆԻ

Նրանք գնում էին իրար հետևից, պապն առջևից՝ մորթե անթև բաճկոնը հագին, ուլունքանախշ կոշիկներով, եղջերվամորթե մեծ գդակը գլխին: Նրա հետևից թոռը՝ Իթիլը, յակուտական զգեստներով, գլխին ականջակալերով գդակ: Պապը սահում էր արագ, նրա տայգայի դահուկները լայն էին. ուսին պահելով հին երկփողանի որսորդական հրացանը, նա համարյա չէր դիմում ձեռների օգնությանը:

Իթիլը ետ էր մնում պապից, չէր հասնում, հաճախ խրվում էր ձյան մեջ, նրա դահուկները նոր էին ու նեղ: Հա՛յրն էր գնել:

Իթիլն ապրում էր քաղաքում, ծնողների մոտ: Ամառային արձակուրդների ժամանակ նա գալիս էր Կոկշի գետի ափը, պապի յարանգում[1] հանգստանալու: Իթիլի համար այդ օրերն ամենաուրախ օրերն էին: Նրա պապը Յակուտիայի նշանավոր որսորդներից մեկն էր: Նա Իթիլին հետը տանում էր տայգա, բայց ինչպես ինքն էր ասում, «միայն ամենամոտ որսասարը»: Երեխան որսորդություն սիրում էր, չնայած միշտ հոգնում էր: Նա խնդրում էր պապին, որ հետը տանի ամենահեռավոր որսատեղին: Պապը լսում, բայց ականջի ետևն էր գցում:

Այսօր ևս նրանք դուրս եկան գետը տանող եղջերուի արահետից և շարժվեցին սոճու անտառակով դեպի ամենամոտ թակարդները... Մի երկու կիլոմետր հազիվ էին անցել, երբ Իթիլի եղեգնյա ձողափայտերը անչափ ծանրացան: Նա քարշ էր գալիս, իր հետևից ձյան վրա թողնելով փայտերի անկանոն հետքերը: Մեկ-մեկ պապը կանգ էր առնում, աչքերի նեղ ճեղքերից խորամանկորեն նայում թոռանը:

— Հոգնե՞լ ես,— մեղմ ծիծաղեց նա: Եվ չնայած, որ Իթիլն իսկապես հոգնած էր, աշխատեց, որ պապը չիմանա այդ մասին:

— Ի՞նչ ես ասում, ես բոլորովին էլ չեմ հոգնել:

Նեղ հովիտը ցանցի նման ծածկված էր կզաքիսի մանր հետքերով, բայց օղակավոր թակարդները դատարկ էին:

— Շրջանցել է,— շշնջաց պապը և կռացավ կզաքիսի հետքերը զննելու,— ի՛նչ արած, Իթիլ, շարժվենք առաջ:

Բայց էլի օղակավոր թակարդները դատարկ էին, իսկ երկաթե թակարդների խայծերը՝ հանված: Պապը բարկացավ, նրա լուսավոր աչքերը փակվեցին դեմքի բազմաթիվ կնճիռների ակոսներում: Իսկ եղյամով ծածկված հոնքերը կարծես ավելի լայն էին ու խճճված: Երբ տուն էին վերադառնում, ճանապարհին պապը լուռ էր և բոլորովին չէր նայում թոռանը...

Ծերունին սովորական շարժումով օջախը ցախ դրեց: Յարանգն ավելի տաքացավ, թեյի, հին մորթու և ապխտած ձկան հոտ եկավ: Իթիլն օջախից թունդ թեյ և եփած նապաստակի միս հանեց, իսկ

1. Յարանգ — վրանաձև տնակ.






ԻՐԻՆԱ ՌԱԿՇԱ

*(Պատմվածք)*

պապը նստեց նստարանին, կեչիի արմատից պատրաստած ծխամորճը ծխելու:

—Ինչքա՜ն վատ ստացվեց,—դանդաղ ծոր տվեց ծերունին:—Ասա, Իթիլ, որսորդները հիմա սկյուռի մորթիներ ընդունման գրասենյակ տանու՞մ են,—և ինքն էլ պատասխանեց իր հարցին,—իհարկե, տանում են, շատ են տանում. իսկ աղվեսի մորթի տանու՞մ են, շատ են տանում. իսկ կզաքիսի մորթի՞,—նա մի պահ լռեց, մի կում թեյ խմեց,—վատ մորթի են տանում, ծակծկված, քիչ են տանում... Ես արդեն ծերացել եմ, էլ ի՞նչ կարող եմ անել, տղաս քաղաքումն է, բժիշկ է դարձել: Վատ է, վատ, ո՞վ պետք է կզաքիս որսա, ես հիմա ու՞մ պետք է թողնեմ որսի հրացանս, ասա, Իթիլ:

— Բա ես ի՞նչ եմ,—հարցրեց Իթիլը և աղերսական հայացքով նայեց պապին:

— Քեզնից որսորդ չի դուրս գա,—պապը հուսահատորեն շարժեց գլուխը,—քանի՞ տարեկան ես: Տասներկու: Երբ ես քո տարիքին էի, քաղցած էի: Ինքս էի տայգա գնում... հեռու էի գնում: Երկաթե թակարդներ էի դնում: Երկու գիշեր ձյան մեջ քնեցի, բայց ինքս բռնեցի գազանին ու բերեցի յարանգ: Այդ տեսնելով, հայրս ասաց. «Դու արդեն որսորդ ես, հիմա ես կարող եմ հրացանս քեզ թողնել...»

— Այդպես է մեր սովորությունը, իսկ սովորությունը օրենքից էլ մեծ է...

Կզաքիսը վախենում է երիտասարդ և խելոք մարդկանցից... Գիտե՞ս, որ կզաքիսն ամենախորամանկ գազանն է:

Թոռը շարժեց գանգրահեր գլուխը:

— Գիտեմ,—ասաց նա:

— Եթե կզաքիսի վրա կրակես ու աչքին չդիպչես, մորթին կծակես, կփչացնես,—շարունակեց մտախոհ պապը:—Դրածդ օղակները շրջանցում է, երկաթե թակարդից խայծը հանում:

— Մի՞թե չի կարելի այնպիսի թակարդ հնարել, որ կզաքիսն ընկնի մեջը և մորթին չվնասվի,—հարցրեց Իթիլը:

— Երևի կարելի է,—ասաց ծերուկը նիհար ուսերը վեր քաշելով,—ես ասացի, որ դրա համար մարդ պետք է շատ խելացի և բոլորովին երիտասարդ լինի: Կզաքիսին բռնիր խորամանկությամբ, եղջերուին արիությամբ... իսկ ինձ համար բոլորովին ամոթ է: Ի՞նչ տանեմ ընդունման կայան... Աչքերս փչացել են... Ու՞մ պետք է թողնեմ հրացանս:

Պապը չոր մատներով շոյեց նոսր, ծխամորճից դեղնած բեղերը և պառկեց տան շեմքին: Իթիլը փչեց ճրագը, տեղավորվեց երկար նստարանի վրա:

Դեռ լույսը չբացված Իթիլն արթնացավ քնից: Երկփողանի հրացանն իր տեղում չէր, դահուկները չկային, ինքը պապիկն էլ չկար:

Իթիլը վեր թռավ արագ հագավ ուլունքանախշ կոշիկները և դուրս եկավ բակ:

Տայգան դեռ ընկղմված էր լուսաբացի լռության մեջ: Իթիլը նայեց շուրջը:

Ահա լայն դահուկների հետքը: Հետքն անցնում էր գետի հունով և բարձրանում լեռը. «Գնացել



է,—դառնությամբ մտածեց Իթիլը,—ինձ չի վստահում, չի հավատում, կարծում է դեռ փոքր եմ, իսկ ես... իսկ ես Նրա համար կզաքիս կբռնեմ...»

Այդ հանդուգն, անսպասելի մտքից նրա սիրտը բաբախեց:

Իթիլը մտավ յարանգ, փնտրեց օղակավոր թակարդները, բայց ոչ մի տեղ չգտավ: Չկային նաև երկաթե թակարդները. ծերունին բոլորն էլ տարել էր իր հետ: Իթիլը չգիտեր ինչ աներ, մի պահ մտազբաղ վարանելուց հետո, երկար նստարանի տակից դուրս քաշեց երկաթե կեռերը, զսպանակները և փորձեց լարել թակարդը: Բայց ժամանակն անցնում էր, իսկ գործն առաջ չէր գնում: Իթիլը ներվայնացավ. «Ինչու՞ ես պապիկին չհարցրի, թե ինչպես կարելի է լարել թակարդները, ինչպես ոլորել կաշին, ինչպես պատրաստել հանգույցները...»—հուսահատ մտածում էր նա: Յարանգը ցրտեց: Իթիլը քաղց զգաց: Հարկավոր էր մի բան անել: Նա կրակ արեց և ձյան վրա տրորված արահետով գնաց դեպի գետը: Սառցանցքը սևին էր տալիս ափի մոտ: Իթիլը դույլը ջրով լցրեց և վերադարձավ յարանգ: Ջրով լի դույլը թողնելով դրսում, նա մտավ ներս՝ թեյը պատրաստելու, իսկ երբ դուրս եկավ, ջուրը սառել էր: Նա զայրույթով դուրս նետեց դույլի սառույցը և պատրաստվում էր նորից ջրի գնալ, երբ հանկարծ գլխում ծագած անսպասելի միտքը կանգնեցրեց նրան...

* * *

Յարանգը մնաց հեռվում: Իթիլը որքան ուժ ուներ, հենվել էր դահուկների ձողափայտերին և մի կերպ քաշում էր նեղ ու երկար սահնակը: Կաշվե գոտիները, որ խաչաձևում էին նրա կուրծքը, նեղում, ճնշում էին, դահուկներն անընդհատ ետ էին սահում. բայց արահետը ծանոթ էր, և տղան վստահ առաջ էր շարժվում: Անտառը լուռ էր: Ջյունածածկ կեչիները զգայուն հանգստությամբ քարացել էին՝ սառել: Հետաքրքրասեր սկյուռը դունչը հանել էր փչակից և հուլունքի նման աչքերը պսպղացնելով նայում էր սահնակին լծված մարդու փոքրիկ հասակին, որն անցնում էր ծառերի միջով... Քրտինքի կաթիլները կախվեցին Իթիլի ջերմացած դեմքին, հողմահարված շրթունքները ճաքճքեցին... Ահա և ամենամոտ հովիտը, ահա և պապի առաջին թակարդները. տղան կանգ առավ ու ետ նայեց իր ծանր բեռին: Սահնակին կապված էին դույլից հանված, վեց դույլաձև սառույցները, որոնց մեջ Իթիլը անցքեր էր փորել: Իթիլը իջեցրեց սառույցները և առանց ձեռնոցները հանելու, որպեսզի որսը չզգա մարդու հոտը, դրեց ձյան մեջ, հետո ապխտած ձկներ գցեց անցքերի մեջ: Երբ այս բոլորն արեց, նայեց կզաքիսի հետքերին, նայեց մթնող երկնքին, դահուկները հագավ, լծվեց արդեն թեթևացած սահնակին ու մտավ տայգա:

* * *

Գիշերը սարսափելի էր. սառնամանիք, խավար, տագնապով ու կասկածներով լի, բայց Իթիլը քնեց, քնեց անհանգիստ, զգոն քնով, նրա միտքը չէր հանգստանում: Տղան արթնացավ, երբ բարձրացող արևի ճառագայթները դիպան նրա ցրտից կարմրած այտերին: Տայգան կանգնած էր զուգված ու թարմացած, փայլում ու առկայծում էր գիշերվա նոր դրած ձյան փաթիլների մեջ:

Հազիվ զսպելով իր անհամբերությունը, Իթիլը նորից կանգնեց դահուկների վրա, շտապով նետվեց դեպի աջ, բացատը, որտեղ դեռ երեկ դրել էր իր առաջին թակարդը: Սառցի թակարդի վրա պառկած էր ձյան փափուկ բարձիկը, իսկ թակարդի միջև պարզ ու որոշ սևին էր տալիս նրա փորած կլոր անցքը: Իթիլն անմիջապես կանգնեցրեց սահող դահուկները, ձեռնոցը ձեռքից հանեց և հուզմունքից հազիվ շունչը պահելով, ձեռքը խրեց անցքից ներս: Եվ հանկարծ... Նա մատների վրա զգաց գազանի ատամների սուր խայթոցը. Նա գրեթե ցավ չզգաց, դեմքը ճառագել էր երջանկության փայլով. նա դեռ չէր տեսել, բայց ձեռքի տակ զգում էր թակարդն ընկած գազանի տաք մորթու փափկությունը...

Պապը վերադարձավ երրորդ օրվա գիշերը: Իթիլը վեր ցատկեց, կրակը թեժացրեց: Պապը կանգնած էր անշարժ, գլուխը կախ և կարծես փոքրինչ կորացած էր: Գոտկից կախված էին մի քանի սկյուռիկներ: Իթիլն իսկույն հասկացավ, որ պապի որսն անհաջող է անցել:

— Ինչ-որ ուրախ բան է պատահել քեզ,—խոսեց պապը:—Ի՞նչ է, մորթիների ընդունման կայանից մա՞րդ է եկել, թե՞ փոստատարը հորիցդ նամակ է բերել:



Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

— Ո՛չ, ո՛չ—Իթիլի աչքերը առկայծեցին,—ավանից ոչ ոք չի եկել, փոստատարն էլ չի եկել... Ասա, պապիկ, եթե ես գազան բռնած լինեմ, դու ինձ քեզ հետ որսի կտանե՞ս:

Ծերունին ուշադրությամբ նայեց թոռանը:

— Այո, այդպիսի մի սովորություն կա, եթե դու կարողանաս գազան բռնել, նշանակում է քեզ կարելի է որսորդ անունը տալ:

— Որ այդպես է, պապիկ, նայիր ես ի՞նչ եմ բռնել,—բացականչեց Իթիլը և գլխի վերևում պտտեցրեց կզաքիսի մորթիները:

Ծերուկը մի պահ քարացավ տեղում: Նրա նեղ աչքերը մի պահ գամված մնացին թոռան երեսին: Դրսից պարզ կերպով լսվում էր ձյունակույտեր դիզող քամու սուլոցը:

— Ինչպե՞ս բռնեցիր դու սրանց,—վերջապես հազիվ լսելի ձայնով հարցրեց որսորդը:

Իթիլը վայրկենապես սկսեց բացատրել. նա այնպես էր շտապում, որ կարծես նրան հիմա կխանգարեին, չէին թողնի, որ պատմեր:

— Հիշու՞մ ես, պապիկ, դու ասում էիր, որ կզաքիսն ամենախորամանկ գազանն է, բայց նրա համար շատ հասարակ թակարդներ կան: Եվ ինչպե՞ս է, որ ես մինչև հիմա գլխի չէի ընկնում: Պարզ բան է. դույլը լիքը ջուր ես լցնում, դնում ես դուրսը, սառնամանիքում, ջուրը սկսում է սառչել և, երբ սկսում է սառչել, մի փայտ ես խրում մեջը, իսկ երբ ջուրը բոլորովին սառչում է, մինչև դույլի հատակը, փայտը դուրս ես քաշում սառույցից, հետո սառույցը հանում ես դույլից և ահա թակարդը պատրաստ է: Ես վեց հատ այդպիսի թակարդ պատրաստեցի, գնացի «մոտակա որսասարը», թակարդները դրեցի կզաքիսի ճրահետի վրա... ա՛յ, տեսնու՞մ ես: Ծերունին լուռ էր: Նրա չոր, նիհար մարմինը մեծ ստվեր էր գցել յարանգի պատին:

— Ես ավան կգնամ,—ուրախ ասաց նա,—ես հիմա կասեմ բոլորին, որ կզաքիսը վախենում է երիտասարդ և խելոք Իթիլից... Ես քեզ հետս լեռները կտանեմ. դու որսորդ ես... Հիմա արդեն ես գիտեմ, թե ում կթողնեմ իմ հրացանը...

Թարգմ. Վ. ԱՐԱՄՅԱՆ

# Ձնագնդին ու մեր Պետին

Վ. ՏԱՅԱՆ



— Էհե՜յ, ձյունը այսօր ծով է…
Խաղանք, տեսնենք ուժեղն ով է.—
Ձայն տվեցին մոտիկ բակից
Տղերքն իրենց բերդի տակից:
— Մենք պատրաստ ենք, չենք վախենա.
Դուք բերդ ունեք, մերն էլ՝ ահա,—
Հպարտացավ մեր ջոկատը
Ու պնդացրեց ձնե պատը:
— Մեր բերդը ո՜ւր, ձեր բերդը ո՜ւր…
— Ոչինչ, տեսնենք ումն է ամուր:
Ու գնդիկներ սարքած թեթև
Մենք դիրք մտանք պատի հետև.
Հենց որ թնդաց զվարթ ուռան.
Գունդ ու գնդիկ առաջ թռան:

Հանկարծ շարքի միջից նրանց.
— Վա՜յ, մամա ջան,— մեկը գոռաց:
Փոքրիկ Վաչեն աչքը բռնեց,
Իսկույն լալով գետին փռվեց:
— Էյ, ո՞վ էր, ո՞վ…
— Խփեց քարով…



Էլ ո՞վ պիտի, գիժ Պետին էր.
Մեզնից թաքուն գունդ էր շինել,
Նետել, իբր պատահաբար.
Իսկ գնդի մեջ՝ կլոր մի քար…
Ախ, այդ Պետին վատ բան արեց.
Ու մեր խաղը զուր խանգարեց:
— Տե՛ս, ասինք թե մեկ էլ անես.
Էլ քեզ ընկեր չենք անի մեզ.
Հետո նորից դիրք բռնեցինք,
Ու մինչև ճաշ հա խաղացինք:

Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ



# ՆՈՒՇԻԿԻ ՁԵՌՆՈՑՆԵՐԸ

ԽՈՐԵՆ ԱՅՎԱԶՅԱՆ    Նկ. ԿԻՐԱ ԻՎԱՆՈՎԱՅԻ

Մի տարով էլ Ալիկը մեծացավ և դպրոց գնաց։ Նույն տարի դպրոց գնացին նաև Նուշիկը, Սիրվարդը, Կարոն։ Հայրիկը գրքեր գնեց Ալիկի համար, գույնզգույն մատիտներ, տետրեր։ Այնպես որ ոչ մի բան պակաս չէր։

Ժիր ու աշխույժ տղա էր Ալիկը։ Շարունակ ձեռք էր բարձրացնում և, ինչպես իրենց տանը, երբեք չէր շփոթվում։ Նուշիկը, Սիրվարդը, Կարոն աշխատում էին ետ չմնալ նրանից։ Ընկեր Աստղիկը գոհ էր բոլորից։ Բայց նա մեկ-մեկ ստիպված էր դժգոհել, երբ դասարանից տետր կամ մատիտ էր կորչում։ Մի անգամ անհայտացան Կարոյի գունավոր մատիտները, Սիրվարդի նկարչական տետրը։ Հաջորդ օրը, վերջին ժամին հանկարծ լաց եղավ Նուշիկը։

Նրա գեղեցիկ ձեռնոցները կորել էին։

Ընկեր Աստղիկը մի պահ ուշադիր նայեց երեխաներին ու ասաց.

— Երեխաներ, ստուգեցեք ձեր պայուսակները։ Գուցե սխալմամբ եք վերցրել։

Մի քանի րոպե դասարանը լուռ էր, միայն տեղափոխվող գրքերի խշրտոցն էր լսվում։

— Իմ պայուսակում չկան։

— Իմում էլ չկան։

— Իմում էլ, — ձայնեցին երեխաները իրար ետևից։

Միայն Ալիկը ոչ իր պայուսակը ստուգեց և ոչ էլ ձայն հանեց։ Նա լուռ ու մունջ մերթ ուսուցչուհուն էր նայում, մերթ էլ՝ Նուշիկին։

— Իսկ երբ են կորել, — հարցրեց ընկեր Աստղիկը։

— Չգիտեմ, — պատասխանեց Նուշիկը՝ արցունքները սրբելով։

Այդ ժամանակ ընկեր Աստղիկը դարձավ բոլորին.

— Երեխաներ, Նուշիկը չգիտի, թե երբ են կորել ձեռնոցները։ Դե, նրանք իրենք իրենց չեն կարող կորչել։ Նրանք ոտքեր չունեն։ Այնպես չէ՞...

Ուսուցչուհին մի պահ կանգ առավ, հերթով ուշադիր նայեց բոլորին։ Ալիկը կարմիր կտրած՝ շարունակ այս ու այն կողմ էր դառնում սեղան-նստարանի վրա։ Ու թեև ընկեր Աստղիկը այդ նկատեց, բայց դարձյալ խոսքն ուղղեց դասարանին։

— Ուրեմն այսպես, երեխաներ։ Երբ տուն գնաք, մեկ անգամ էլ ստուգեցեք ձեր պայուսակները։ Նուշիկին առանց ձեռնոցների չպետք է թողնել։ Դա անազնվություն է։

— Ես անպայման կստուգեմ, — ասաց Կարոն։



— Ես էլ։

— Ես էլ։

— Իսկ ես... Ես միր ձեղնահարկը կնայեմ, ընկեր Աստղիկ, — վերջապես կմկմաց Ալիկը։

Հաջորդ օրը, երբ զանգը տվեց, և երեխաները նստեցին իրենց տեղերը, Նուշիկը հանկարծ ուրախ-ուրախ բղավեց.

— Ահա իմ ձեռնոցները, ընկեր Աստղիկ։

Սեղան-նստարանի դարակում, Նուշիկի հենց պայուսակի վրա դրված էին նրա կանաչ ձեռնոցները։

Երեխաները զարմանքով նայեցին միմյանց, Նուշիկին, ընկեր Աստղիկին։

Իսկ ընկեր Աստղիկը՝ Ալի-

կլինի։ Հենց այստեղ ընկ. Աստղիկը տեսավ, որ Ալիկը դարձյալ շփոթվեց, դարձյալ կարմրեց, գլուխը կախեց։ Բայց նա այս անգամ էլ անուշադրության մատնեց Ալիկի շփոթմունքը։ Դեմքով իսկույն դարձավ երեխաներին։

— Ով էլ որ բերած լինի, երեխաներ, ուրեմն նա ազնիվ աշակերտ է։ Նուշիկին առանց ձեռնոցների չթողեց։

Երեխաները կրկին իրար նայեցին ու գոհ ժպտացին միմյանց։ Թվում էր՝ կժպտա և Ալիկը։ Բայց նա շարունակում էր գլուխը հակած պահել կրծքին ու մտովի նախատել իրեն, որ ձեռնոցների հետ չէր բերել Սիրվարդի նկարչական տետրը և Կարոյի գունավոր մատիտները։

# Գաթա թխեմ



ԳՐ. ԵՂԻԿՅԱՆ

Ալյուր մաղեմ, խմոր անեմ,
Գաթա թխեմ, տատիս տանեմ.
Մեջը լինի քաղցր խորիսխ՝
Կաթ ու մեղր, նշի կորիզ.
Սիրուն-սիրուն նախշեր անեմ,
Վրան մաղած շաքար ցանեմ,
Համով լինի, հոտով լինի,
Իմ լավ տատի սրտով լինի։

---

ՄԻՔԱՅԵԼԵ ՌԱՇԻԴ

(Քուրդ գրող)

# ԾՈՒՅԼ ՓԻՍՈՒՆ

Մի օր փիսոն տնքաց. «Վա՜յ ինձ,
Կոտրվում է մեջքս ցավից...»
Ելանք, բժիշկ կանչեցինք մենք,
Փիսոն էլ թե՝ մեռա՜, փրկե՜ք։
Բժիշկն իսկույն թեքվեց վրան,
Պոչից-մռութ զննեց նրան
Ու գլուխը տարավ-բերեց.
—Դե՞ղ է ուզում. թե՞ մի լավ ծեծ.
Ախր, հիվանդ չէ նա իսկի,
Չհավատաք ծույլ փիսիկին։

—Ա՛յ դու փիսո, չե՞ս ամաչում,
Որ հեռու ես գործից փախչում,
Ի՞նչ ես պառկել առողջ տեղով.
Էլ մկներին ո՞վ բռնի, ո՞վ...
Կերած հացդ հարամ լինի,
Որ տվել ենք մինչև հիմի։



# ԴԱՀՈՒԿԱՎՈՐ ԽՈԶՈՒԿԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Մեր խոզուկը դահուկավոր
Արշավանքի եկավ մի օր…
Զարմանանք, երեխաներ.
Այնքան չաղլիկն էր այդ Արան.
Որ բոլորը դպրոցում՝ մեր
Խոզուկ էին կանչում՝ նրան:
— Խոզո՛ւկ,— ասինք,— հո չե՞ս գժվել,
Չէ՞ որ կարգին դեռ չես վարժվել.
Ո՞նց կարող ես դու բարձրանալ
Ու բլուրից ցած սլանալ:
— Ոչինչ,— ասաց նա անտարբեր.—
Կտեսնենք դեռ…

Ու բարձրացավ բլուրը մեծ
Եվ այնտեղից ներքև սահեց:
Վա՛հ. այդպես էլ արագ սահե՜լ.
Էլ դժվար էր իրեն պահել:
Մեկ էլ թափով գլորվեց վար
Ու ձորն ընկավ լեղապատառ…

Վազքով արագ այնտեղ հասանք
Ու ի՞նչ տեսանք…
Երկու ժայռի արանքում՝ նա
Օրորվում՝ է գլխի վրա.
Կախ է ընկել անօգնական
Դահուկներից իր սիրական…
Ազատեցինք մինչև մահից.
Խեղճի ուշքը գնաց ահից:
Էլ ի՞նչ… ասած մեր թիկնանքերին.
Տուն բերեցինք այդ խենթուկին:


Նկ. Ք. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

# Ի՞ՆՉ ԵՂԱՎ…

Ջովանն ասաց.— Ջո՛ւր բեր մի դույլ.
Գյուլեն գնաց, բերեց իսկույն…
Տաքացրին ջուրը արագ,
Տաշտը բերին, օճառն առան.
Ջովանն ասաց.— Բեր Չալոյին:
Գյուլեն բռնեց մեր Չալոյին,
Բերեց, դրեց խոր տաշտի մեջ.
—Ի՞նչ եք ուզում,— Չալոն հաչեց:
Ջովանն ասաց.— Իմ լավ Չալո,
Կլողացնենք քեզ օճառով,—
Ու ջրով լի դույլը վերցրեց,
Շրը՛մփ, նրա գլխին լցրեց.
Բայց ի՞նչ եղավ, վա՜յ, ի՞նչ եղավ…
—Ջուրը տաք էր. Չալոն փախավ:


Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

# ԿԵՍԻՏՈ

## ԲԺԻՇԿ ՄԿՆԻԿԸ

*ՀԵԿՏՈՐ ՕԵՍՏԵՐՀԵԼԴ*
*(ՆԿԱՐՆԵՐԸ՝ ՆԵԼԼԻ ՕԵՍՏԵՐՀԵԼԴԻ)*

Կեսիտո այն մկնիկի անունն է, որը ամեն գիշեր ծածուկ մտնում էր ցուցափեղկը և փորը լցնում պանիրով։

Նա այնքան էր պանիր սիրում, որ անունը դրին Պանրիկ (կեսիտո)։

Մի անգամ Կեսիտոն պատահեց մի փիսիկի, որն արցունքների մեջ ողողվել էր ու անվերջ «մյաու՜-մյաու՜» ասելով լաց էր լինում։ Կեսիտոն նրան պառկեցրեց, բռնեց զարկերակը, հաշվեց, թևի տակ ջերմաչափ դրեց և, վերջապես, ասաց.

— Ջանձրույթից է. ես սրան կտանեմ զբոսնելու։

Եվ Կեսիտոն մոտեցավ խաղալիքներով լեցուն արկղին, վերցրեց մի կարմիր մե-







քենա ու նորից վերադարձավ փիսիկի մոտ։

Բայց փիսիկը իսկի չնայեց էլ մեքենային և շարունակեց լացը. «մյաու՜-մյաու՜»։

«Չի ուզում զբոսնել,—մտածեց Կեսիտոն,—այդ դեպքում ես կծիծաղեցնեմ սրան»։

Նա ծաղրածուի շորեր գտավ, հագավ և սկսեց փիսիկի առաջ ծամածռություններ անել։

Բայց փիսիկը դարձյալ առանց ուշադրություն դարձնելու, շարունակում էր լաց լինե՜լ. «մյա՜ու-մյաու՜»։

— Ա՜,—ասաց Կեսիտոն՝ ձեռնափայտը



ճակատին խփելով,— փիսիկը երևի սոված է։

Եվ անմիջապես գնաց բանջարանոց, դուրս քաշեց մի գազար, գցեց սայլակի վրա ու քարշ տալով բերեց։

Խոհանոցում նա գազարը գցեց կաթսայի մեջ, դրեց կրակի վրա և սկսեց այն-



քան ժամանակ խառնել, մինչև որ գազարից շատ ախորժելի հոտ եկավ։

Բայց փիսիկը նույնիսկ համը տեսնել չուզեց։ Նա անվերջ լաց էր լինում։ «Մյաու՜, մյաու՜»։ Կեսիտոն տեսնելով, որ



էլ ճար չկա, մի մոմ գտավ, վառեց, բարձրացավ սեղանին և, վերցնելով մի հսկայական գիրք, կարդաց.

«Երբ փիսիկները սոված են լինում, նրանց պետք է կաթ տալ»։ Հենց որ Կեսիտոն մի փոքրիկ ամանով կաթ բերեց,





փիսիկը ձայնը կտրեց, լեզուն արագ-արագ շարժելով, սկսեց կլանել կաթը... Կեսիտոն նույնպես ուզեց կաթը խմել. նա գտավ մի երկար ծղոտ, մի ծայրը դրեց կաթի մեջ, իսկ մյուս ծայրից սկսեց ծծել...

*Իսպաներենից թարգմ. Է. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

# Թռչնակն ու փիղը

Հնդկական հեքիաթ

Խիտ անտառում մի մեծ ծառ կար: Այդ ծառի վրա մի թռչնակ հյուսել էր իր փոքրիկ բույնը և ձագեր հանել:

Մի անգամ փիղը մոտեցավ, հենվեց այդ ծառի բնին և սկսեց նրանով իրեն քորել: Ծառը ճռճռաց: Ձագուկները ահից սեղմվեցին իրենց մորը, Մայր թռչնակը բնից հանեց կտուցը և խընդրեց.

— Ո՜վ ջունգլիների մեծ տիրակալ, չէ՞ որ շրջապատում այնքան հարմար ծառեր կան, Մի՛ շարժիր այս ծառը: Իմ ձագուկները վախենում են: Նրանք կարող են ցած ընկնել բնից և վնասվել:

Հսկա փիղը ոչինչ չպատասխանեց: Նա իր փոքրիկ աչքերով նայեց թռչնակին, թափահարեց մեծ ականջները և հեռացավ:

Մյուս օրը փիղը նորից եկավ և սկսեց քսվել ծառի բնին: Ձագերը խիստ վախեցան և կպան իրենց մորը: Մայր թռչնակը շատ բարկացավ և ճչաց փղի վրա.

Այլևս չհամարձակվես թափ տալ այս ծառը, թե չէ ես քեզ խելքի կբերեմ:

Փիղը զայրացավ:

— Ինչի՞ն թռչնակ դու ի՞նչ կարող ես անել ինձ՝ Հնդստանի ջունգլիների հզոր տիրակալին: Դե որ այդպես է, հիմա այնպես կշարժեմ ծառը, որ քո բույնն էլ, ձագուկներդ էլ գետին կընկնեն ու կջախջախվեն:

Թռչնակը, այդ խոսքերից վախեցած, լռեց:

Երրորդ օրը փիղը նորից եկավ և սկսեց ավելի եռանդով քսվել ծառի բնին: Այդ ժամանակ թռչնակը իսկույն դուրս թռավ բնից և կայծակի արագությամբ մտավ փղի ականջը, սկսեց այնպես խուտուտ անել ու չանգռել, որ փիղը իրեն կորցրեց: Նա ցնցում էր գլուխը, թափահարում ականջները, բայց ոչինչ չէր օգնում: Այդ ժամանակ փիղը սկսեց աղերսել թռչնակին, որ նա դուրս գա իր ականջից, և երդվեց այլևս չանհանգստացնել ո՛չ նրան, ո՛չ էլ նրա ձագուկներին:

Թռչնակը պատասխանեց.

Չէ՞ որ ես քեզ խնդրում էի ձեռք չտալ ծառին և չվախեցնել իմ ձագուկներին:

Փիղը գոռում էր անտառով մեկ, ցնցում գլուխը, թափահարում ականջները, գալարում կնճիթը: Վերջապես ուժասպառ ընկավ գետին: Այդ ժամանակ թռչնակը դուրս թռավ նրա ականջից և վերադարձավ իր ձագերի մոտ:

Դրանից հետո փիղս այլևս չէր մոտենում այդ ծառին:

Թարգմ. Է.Դ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նկ. Յ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՇԱՆ ԵՎ ԳԱՅԼԻ ԿՌԻՎԸ

ԻՎԱՆ ՖՐԱՆԿՈ

Նկ. Ա. ԳԱԼԵՆՑԻ

Ժամանակին տիրոջ մոտ ապրում էր մի Շուն, որը մեծ բարեկամություն ուներ Գայլի հետ։ Երբեմն նրանք իջնում էին անտառի ծայրը և հին կաղնու տակ նստում ու զրուցում էին դեսից-դենից։ Շունը Գայլին պատմում էր գյուղի նորությունների մասին, իսկ Գայլը Շանը հաղորդում էր անտառի նորությունները։

Եվ ահա մի անգամ Գայլն ասում է Շանը.

—Լսիր, Գրիվկո, լսել եմ, որ քո տիրոջ խոզը գոճիներ է ծնել։

—Ճիշտ է։ Տասներկու գոճի է բերել։ Այնպես կլորիկ են, գեղեցիկ, վարդագույն, նույնիսկ նայելը հաճելի է։

—Ա՛յ, ա՛յ, ա՛յ,—չպչպացնում է Գայլը։—Առանց այն էլ թուքս գնում է։ Ասում ես, տասներկու՞ս. է՛հ, պետք է այսօր երեկոյան այցելել նրանց։

—Ո՛չ, Գայլուկ,—ասում է Շունը,—այդպիսի բան չանես։ Հիշու՞մ ես, թե ինչ պայման ունենք մենք։ Մենք կլինենք բարեկամներ, ես քեզ կպատմեմ գյուղի բոլոր նորությունների մասին, բայց դու դրա համար երբեք չպետք է գնաս իմ տիրոջ բակը։ Իսկ եթե դու նրան վնաս պատճառես, ուրեմն, վե՛րջ մեր բարեկամությանը։

—Մի՞թե արժի, որ մենք այդպիսի դատարկ բանի համար գժտվենք,—ասում է Գայլը։—Չէ՞ որ գոճիները տասներկուսն են։ Նույնիսկ չի էլ նկատվի, եթե ես մեկ-երկուսին պատառ-պատառ անեմ։

—Չէ՛, Գայլուկ,—նախազգուշացնում է նրան Շունը,—դու մեզ մոտ մի գա, թե չէ դժբախտություն կլինի։

—Ի՞նչ դժբախտություն։ Մի՛ վախենա։ Ես այնպես կսողոսկեմ խոզանոց, այնպես զգուշորեն գործը գլուխ կբերեմ, որ ոչ ոք ոչինչ չի լսի։

—Բայց ես հո՛ կլսեմ։

—Դու՞... Ես կարծում եմ, որ դու կլռես, չես դավաճանի քո բարեկամին։

—Քեզ համար հեշտ է այդպես խոսելը,—տխուր ասում է Շունը,—չդավաճանել բարեկամին։ Բայց չէ՞ որ իմ տերը ինձ համար ավելի մեծ բարեկամ է, նա ինձ կերակրում է։ Ինչպե՞ս կարող եմ ես հանգիստ լինել, երբ նրան վնաս են տալիս։ Եվ ի՞նչ կասի նա ինձ հետո։

—Արա ինչպես ուզում ես,—ասում է Գայլը,—իսկ ես պիտի այցելեմ քո խոզերին։ Եվ քեզ խորհուրդ եմ տալիս լռել։

Գիշերը վրա հասավ։ Գայլն իր խոսքի տերն էր, դուրս եկավ անտառից և գաղտագողի մոտեցավ խոզանոցին։ Շունը տեսավ ու մտածմունքի մեջ ընկավ.

«Ի՞նչ անել։ Մի փոքր էլ կսպասեմ, եթե Գայլն իսկապես կարողանա առանց աղմուկի գործը գլուխ բերել, թող ինչ ուզում է անի։ Բայց եթե խոզանոցից մի փոքր աղմուկ լսեմ՝ չեմ լռի»։

Եվ իսկապես, հազիվ է Գայլը անցքից մտնում, որ խոզն զգում է նրա ներս մտնելը և վայնասուն բարձրացնում։ Բա գոճիներն ինչպես են մռթմռթացնում, իսկ Շունն էլ լսելով այդ բոլորը, ո՜նց է հաչում, ո՜նց է կլանչում։ Տերերը նետվում են խոզանոց և այնտեղ տեսնում Գայլին։ Հարձակվում են նրա վրա, և մինչև խեղճը կհասցներ անցքից դուրս պրծնել, այնպես են հասցնում նրան, որ երկու օր ոչ մի տեղ չի գնում, պառկում է անտառում ու վերքերը լիզում։

Շունն էլ չի գնում անտառի եզրը Գայլի հետ զրուցելու, բայց մի որոշ ժամանակ անց Գայլն ինքն է երեկոյան ներկայանում նրան. կանգնելով դարբասի հետևը, ասում է.

—Է՛հ, Գրիվկո, ահա թե ինչպիսի ընկեր ես։ Սպասի՛ր հալա, սպասի՛ր, ես դա քեզ կհիշեցնեմ։

—Բա ես քեզ չասացի՞, որ դու իմ տիրոջ մոտ չգաս,—ասում է Գրիվկոն։

—Բա ես քեզ չպատվիրեցի՞ լռել,—ռնչում է Գայլը։

—Բայց չէ՞ որ դու ասացիր, որ գործը գլուխ կբերես առանց աղմուկի, հիշու՞մ ես։ Քանի հանգիստ էր, ես լռում էի։ Իսկ ինչու՞ դու խոզերի հետ կռիվ սարքեցիր։

—Դե, ո՞վ նրանց հետ կռիվ սարքեց,—չարությամբ մռթմռթում է Գայլը։—Ես հենց մտա խոզանոց, նրանք սկսեցին աղմկել։ Բայց ես եմ՝



չեմ լինի, եթե դա ներեմ նրանց: Լսիր, Գրիվկո, մի թարմվի: Խոսք տուր ինձ, որ կլսես, իսկ ես այսօր գիշերը կգամ խոզերին հյուր:

— Ինձ ինչ, արի,— ասում է Գրիվկոն,— միայն հիշիր, որ խոզանոցում հանգիստ լինի, իսկ եթե աղմուկ բարձրացնես՝ չեմ լռի:

Գայլը գնում է և կեսգիշերին նորից խցկվում խոզանոց: Գրիվկոն հո հիմար չէր՝ խոզի ականջին փսփսացել էր, որ չքնի և զգաստ լինի: Գայլը չի հասցնում գլուխն էլ անցքից ներս մտցնել, որ խոզն ու գոճիները ներսում ճիչ ու աղմուկ են բարձրացնում: և Գրիվկոն այնպես աղիողորմ է ոռնում տան պատուհանների տակ, որ Գայլը չորս ոտքերն առած ծլկում է դեպի անտառ:

Անցնում է նորից մի քանի օր: Գրիվկոն էլ չի գնում կաղնու մոտ Գայլի հետ զրուցելու, և Գայլն էլ խոզին այցի չի գալիս:

Բայց մի անգամ երեկոյան Գրիվկոն տեսնում է, որ Գայլը կանգնել է դարբասի մոտ և իրեն է կանչում: Շունը մոտենում է:

— Ինչ է պատահել, Գրիվկո,— սիրալիր ասում է նրան Գայլը,— ինչու՞ անտառ չես դուրս գալիս: Մի՞թե մոռացել ես մեր հին բարեկամությունը: Զրույց անելը քեզ չի ձգու՞մ:

— Չի ձգում,— ասում է Գրիվկոն:

— Ա՜խ դու, դավաճան,— նրա վրա բղավում է Գայլը:— Դու կարծում ես, թե ես քեզ կներե՞մ: Կարծում ես, թե ես չգիտե՞մ, որ դու՛ խոզին նախազգուշացրիր: Բայց սպասիր, դու երբևէ դուրս կգաս դարբասի այս կողմը, ես ե՛ս չեմ լինի, եթե քեզ չդարանակալեմ: Իսկ այն ժամանակ, դու հավատացած եղիր, որ ստիպված կլինես հրաժեշտ տալ կյանքից:

— Դե ի՞նչ արած,— ասում է Գրիվկոն:— Մի անգամ ծնվել ենք, մի անգամ էլ կմեռնենք: Ես այդպես էլ գիտեի, որ մեր բարեկամությունը կարճատև է: Բայց հիշիր դու, Գա՛յլ, որ քեզ էլ ես կարող եմ դարանակալել, և դու էլ չես կարող պրծնել փորձանքից:

— Ա՛խ դու, շան կաշի,— դարբասի ետևից կատաղում է Գայլը:— Դու դեռ համարձակվում ես ինձ սպառնա՞լ: Եթե այդպես է, պատրաստ կաց ինձ հետ կռվելու: Տեսնենք ո՞վ կփոշմանի: Դու քո ասպետների հետ երրորդ օրը պետք է լինես կաղնու մոտ: Համաձայնայի՞ է: Իսկ եթե չներկայանաս, վատ կլինի: Այն ժամանակ ես իմ ասպետների հետ կգամ այստեղ, ականջիցդ բռնած դուրս կքաշենք քո բնից և բզիկ-բզիկ կանենք քեզ:

Եվ այդպես, Գայլը գնում է: Մոտենալով անտառին, նա քայլերն ուղղում է դեպի Արջի որջը և, կանգնելով Արջի դիմաց, քաղաքավարի բարևում է, ու ասում.

— Լսեցեք, քեռի Բուրմիշա, ես ձեզ մոտ մի մեծ խնդրով եմ եկել: Իմ և Գրիվկո շան միջև վեճ ծագեց, և ես նրան կռիվ հայտարարեցի: Արդյոք բարի կլինե՞ք ինձ օգնություն ցույց տալու:

— Անշուշտ, կօգնեմ,— պատասխանում է Արջը:— Վերջապես ժամանակն է այդ թափառաշրջիկի հախից գալ:

Գայլը ուրախ-ուրախ վազում է առաջ և ճանապարհին հանդիպում է Վարազին:

— Լսեցեք, քեռի Կլիկաչ,— ասում է Գայլը,— օգնեցեք ինձ: Երեք օրից հետո ես Շան հետ մեծ կռիվ եմ ունենալու, դրա համար էլ ես հավաքում եմ անտառի ամենարիտիր ասպետներին:

— Լավ,— ասում է Վարազը,— իհարկե, կօգնեմ:

Գայլը կանչում է նաև Աղվես Մկկիտային: Բոլորը միասին մտածում են և որոշում, որ իրենց ուժն արդեն բավական է: Երբ հասնում է ճակատամարտի օրը, նրանք ուղևորվում են դեպի կաղնին, սպասելով հակառակորդին:

Խիստ վշտանում է Շուն Գրիվկոն, իմանալով, թե ինչպիսի կռիվ է հորինել իր դեմ Գայլը:

«Ի՞նչ անեմ հիմա ես,— մտածում է նա:— Ես ինչպիսի՞ ասպետներ հրավիրեմ այս կռվին: Չէ՛, երևի պետք է կործանվեմ»:

Այսպես մտածում է խեղճ Գրիվկոն մի օր, մտածում՝ երկու օր և ոչինչ չի կարողանում հնարել: Նույնիսկ կերակուր կուլ չի գնում: Գլուխը կախ քայլում է իրեն կորցրած:

— Էհե՜յ, Գրիվկո, ի՞նչ է պատահել քեզ հետ,— ձայն է տալիս Մուրիկա Կատուն, նրա բարի ընկերն ու բարեկամը:

— Էհ, ինչ ասեմ քեզ,— դժկամությամբ պատասխանում է Գրիվկոն:— Ես դարդ ունեմ էլի: Երևի դու էլ ինձ չես օգնի:

— Հա մի պատմի, պատմի,— պնդում է Մուրիկան:— Կօգնեմ, թե չեմ օգնի, գոնե թախիծդ կցրեմ:

Գրիվկոն Մուրիկա կատվին պատմում է իր և Գայլի վեճի մասին:

—Դարդ մի անի, եղբայր,—ասում է Մուրիկան,— ես քեզ կօգնեմ։ Միայն գնա Սագին ու Բադարյորին էլ կանչիր։ Հուսով եմ, որ այդ կռվում մենք ամոթով չենք մնա։

Գրիվկոն լսում է խելացի խորհուրդը, հրավիրում Բադարյորին ու Սագին, և նրանք խոստանում են այդ կռվում նրան օգնել։

Գալիս է պայմանավորված օրը։ Առավոտ ծեգին Գրիվկոն իր ասպետների հետ արդեն դուրս է գալիս արշավանքի։ Առջևից գնում է Սագը և շարունակ կռնչում, կարծես թմբուկ էր խփում. «Տրա-տա-տա։ Տրա-տա-տա»։ Նրա հետևից քայլում էին Գրիվկոն և Մուրիկան՝ պոչերը ցցած, որ կարծես կռվողների զենքեր լինեին, իսկ վերջից գնում էր Բադարյորը և գլուխը շարունակ գետնին էր կռացնում ու խոնարհաբար ավելացնում. «Տա՛կ-տա՛կ-տա՛կ։ Տա՛կ-տա՛կ-տա՛կ»։

Իսկ այդ ժամանակ, թշնամիներին սպասելիս, Գայլն Արջին հրամայում է բարձրանալ ծառը և դիտել մոտեցող թշնամու զորքը։

—Լսե՛ք, եղբայրներ,—ծառի վրայից բղավում է Արջը։—Գալիս են, արդեն գալիս են մեր թշնամիները։ Եվ սարսափելի են։ Առջևից գալիս է թմբկահարը... Լսու՞մ եք, ինչպես է թմբկահարում։

—Լսում ենք,—երկչոտ պատասխանում են ասպետները։

—Իսկ նրա հետևից գալիս են հրացաններով երկու կատաղի հրաձիգներ։

—Օ՜յ, դժբախտություն է լինելու,—միաժամա-



նակ բացականչում են Գայլն ու Աղվեսը։—Մենք կորած ենք։

—Իսկ հետևից գալիս է ինչ-որ կախարդ և ոգեշնչում է այդ հրաձիգներին, կարծես թե նրանց հետևից շարունակ գետնից գնդակներ է հավաքում և ցույց տալով խոստում է. «Տա՛կ-տա՛կ-տա՛կ»։

—Վա՜յ, դա իմ հոգին առնելու համար է եկել,— հառաչում է տերևների տակ պառկած Վարազը։

—Ի՞նչ անենք, եղբայրներ,—հարցնում է Գայլը։ —Չէ՞ որ մեզ սազական չի ճակատամարտի դաշտից փախչել, այն էլ առանց կռվելու։ Առա՛ջ, համարձակ դեպի...

Բայց չի հասցնում նա իր խոսքը վերջացնել, երբ Կատուն հեռվից տեսնում է, որ տերևների մեջ ինչ-որ մի բան է խշխշում ու շարժվում, կարծում է, թե մուկ է, և ամբողջ թափով վազում է այնտեղ։ Իսկ դա Վարազի պոչն էր, որը հլու հնազանդ պառկել էր տերևների տակ, բայց վախից նա ակամա շարժում էր պոչը։

Կատուն իր սուր ճանկերով կպչում է Խոզի պոչին և սկսում է ատամներով կրծել։ Վախից ու ցավից գժված, Վարազը, պո՜ւկ, փախչում է։ Իսկ Կատուն նրանից ավելի շատ վախեցած լինելով, փշտացնում է, մեջքը կորացնում, նետի պես հարձակվում է դեպի կաղնին և սկսում է նրա վրայով բարձրանալ։

—Վա՜յ,—բղավում է վերևում ճակատամարտին հետևող Արջը։—Սա իսկապես իմ մահն է։

Եվ բարձրանում է վերև։ Բայց շտապելուց այնպիսի բարակ ճյուղից է բռնում, որ կոտրվում է, և խեղճ քեռին կոճղի պես ծառից գլորվում է ցած։ Դե արդեն պառկելու ժամանակ չէր։ Շունը տեսնում է Աղվեսին, հարձակվում է նրա վրա և բռնում է, ճիշտ է, ոչ թե գլխից, այլ միայն պոչից։ Խեղճ Աղվեսը ամբողջ ուժով ձգում է, ձգում և պոչը թողնելով Գրիվկոյի ատամների արանքում, պո՛ւկ, փախչում է։ Իսկ այդ ժամանակ Արջը թեև ցավից ու վախից հազիվ էր կենդանի մնացել, այնուամենայնիվ ոտքի է կանգնում և վազում դեպի անտառ։

Պարզ է, որ այսպիսի սարսափելի ջարդից հետո այդ բոլոր ասպետներին ու Գայլին ուրիշ բան չէր մնում անելու, քան փախչել։

Եվ այսպես Շունն իր ընկերների հետ փայլուն հաղթանակ տարավ Գայլի հետ կռվելիս։ Փառաբանելով իրենց հաղթանակը և մի քիչ կանգնելով բացատում, ուրախ գնացին տուն։ Իսկ ջախջախված ասպետները հավաքվում են անտառի մացառուտում, Արջի որջի մոտ և սկսում են հիշել, թե այս կռվում ինչպիսի սարսափներ են զգացել։

—Է՜-է՜, ճարպկություն չէր մեզ երկու հրացանով հաղթելը,—ասում է Գայլը։

—Իսկ իմ պոչից, եղբայրներ, տեսեք, թե ինչ մեծ կտոր են սրով կտրել,—ասում է Վարազը։

—Իսկ ինձ վրա նետեցին ոչ այլ ինչ, քան ռումբ, և [illegible],—ասում է Աղվես Միկիտան։

—Իսկ ես չգիտեմ, թե ինչ եղավ ինձ հետ,— տնքալով ասում է Արջը։—Միայն հիշում եմ, որ ես իմ կյանքում առաջին և վերջին անգամ փորձեցի թռչել։ Թռչելը դեռ այսպես թե այնպես ոչինչ, բայց նստելն արդեն շատ վատ է։

ԺԱՆՆ ԴԸՐՄԸՋԻ
*(Անգլիացի բանաստեղծ)*

# ԾԵՐ ՀՈՎԻՎԸ

Պապը մնաց սարի կարոտ.
Արդեն ծեր է, կույր...
Հոտը էլ չի տանում արոտ՝
Սարը ծաղկաբույր։

Տրտում է նա խարխափելով,
Քայլում է հազիվ,
Նստում, խոսում է ժամերով
Իր հոտի մասին։

Քիչ է մնում՝ արցունք թափի
Թոռնիկը նրա.
— Ձեռքդ ինձ տուր, գնանք, պապի,
Սարը քո սիրած,

Ես ցույց կտամ տեղը հոտի...
— Պետք չէ,— պապն ասաց,—
Ինձ հետ է միշտ հոտը, որդի,
Արթուն թե քնած։

Առավոտյան հովը շնկաց,
Ինչքա՜ն է սառը...
Ձեռքը պարզեց պապը հանկարծ.
— Հոտն էլավ սարը։

Թոռը նայեց, ապշած մնաց,
Ո՞նց տեսավ պապը։
Հոտն է խոսում՝ ճամփան բռնած,
Դեպի քարափը։

Բարձրանում է արևն արդեն
Դեպի զենիթը,
Լցնում ոսկով իր լուսեղեն
Գյուղն ու հովիտը։



Պապը ժպտաց.
— Տեսնում եմ ես
Ամեն, ամեն բան.
Հոտը արդեն, հապա մի տե՛ս,
Ջրելու տարան։

Ա՛յ քեզ հրաշք. լանջից վերին
Հոտն իջավ գետափ։
Չի հավատում թոռն աչքերին.
— Մի՞թե կույր ես, պապ։

# ՀԱԶՐԵԹԸ ԳՆՈՒՄ Է ՁԻԱՐՇԱՎԻ

Ձիարշավի է պապը գնում,
Թոռը խնդրում է.
— Տար ինձ քեզ հետ,
Տատը լսում է ու բարկանում.
— Քեզ դուրս չեմ թողնի այսօր, Հազրե՛թ։
Անցյալ տարվա պես պիտի կորչես.
Պարա՞պ եմ, որ գամ, որոնեմ քեզ...
Նրան լսում է ամբողջ տունը,
Տատի հետ վիճելն ապարդյուն է,
Թոռը տխրում է։ Պապն ի՞նչ անի,
Որ տղային էլ հետը տանի։

Տատը կանգնած է տան դռանը։
Պապը մտածեց, մուշտակ հագավ,
Փեշի տակ առավ իր թոռանը,
Դուրս եկավ իբրև փախստական։

Հրճվում է տղան ու քրքջում.
— Ա՜յ, ա՜յ, ա՜յ,— հեռվից տատն է կանչում,—
Ինձ ո՞նց խաբեցիք, խորամանկնե՛ր,
Ես ձեզ ձիարշավ ցույց կտամ դեռ։
Տատը ժպտում է. մուշտակի տակ
Չորս ոտք է տեսնում։ Ա՛յ քեզ կատակ։

# ՌԱՋԻԲԸ

Պարապությունից Ռաջիբը մի օր
Շուռ տվեց բրդոտ մուշտակը իր հոր,
Հագավ, սպասեց, որ մի քիչ մթնի,
Գլուխը ծածկած՝ սենյակը մտնի
Ու իր քրոջը վախեցնի մի լավ։
Այդպես էլ արեց։ Ոռնալով մտավ.
Ոռնում է, ոռնում սոված գայլի պես։
Բայց թե սարսափեց ինքն էլ վերջապես։
Գլուխը հանեց մուշտակի տակից.
Դուրս էր գնացել քույրը սենյակից.
Լույսն էլ հանգցրել... Տղան զարնուրեց,
Ճչաց, լաց եղավ... Ա՛յ թե վախեցրեց։

*Թարգմ. ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*



Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ




## ՎԱՐԴԱԳՈՒՅՆ ՔԱՂԱՔ

**1959 թ. նոյեմբերի 22**

Հենց սկզբից գրեմ, թե ինչպես սկսվեց: Սկսվեց այսպես.

Մեր ջոկատի հավաքույթում խոսում էինք տարբեր խմբակների մասին: Ես էլ խոսեցի: Բոլորը խոսում էին պատանի բնասերների, պատանի տեխնիկների, թատերական, գրական և այլ խմբակների մասին: Իսկ ես երկար մտածեցի և ասացի, որ պետք է կազմակերպել նաև աշխարհագրական խմբակ: Ես աշխարհագրություն շատ եմ սիրում, իսկ այդպիսի խմբակ չունենք: «Ճիշտ է» ասաց Միրզոյան Սեդան: Նա էլ աշխարհագրություն շատ է սիրում: Մի քանի հոգի էլ ձայն տվեցին. «Ճիշտ է»:

Այդ ժամանակ մեր ջոկատավար ընկեր Համբիկն ասաց, որ կարելի է: Նա գնաց ուսուցչանոց, խնդրեց աշխարհագրության դասատու ընկեր Պետրոսյանին, որ գա մեր հավաքին: Ընկեր Պետրոսյանը մեզ գովեց և ասաց, որ ուրախությամբ կղեկավարի խմբակը:

Տեղնուտեղը կազմեցինք խմբակի անդամների ցուցակը, իսկ ինձ նշանակեցին խմբակի ավագ:

Հետո Սեդան ասաց, որ առաջ պետք է ուսումնասիրենք մեր ռեսպուբլիկան: Բոլորը համաձայնվեցին: Իսկ ընկեր Համբիկն ավելացրեց. «Որ այդպես է, եկեք մեր խմբակը կոչենք «Իմ Հայաստան»: Ուղղակի հիանալի ստացվեց: Հետո Սեդան առաջարկեց խմբակի օրագիր ունենալ և գրառումները կատարել հերթով: Առաջին գրանցումը հանձնարարվեց ինձ:

Այսօրվա մեր պարապմունքը նվիրեցինք Երևանին: Խմբակի բոլոր անդամները գրքերից, թերթերից, ամսագրերից տարբեր նյութեր էին հավաքել Երևանի մասին: Շեֆ մինիստրությունը ավտոբուս տվեց, և մենք գնացինք քաղաքը դիտելու: Էքսկուրսիայից հետո վերադարձանք դպրոց և անցկացրինք խմբակի պարապմունքը: Երեխաները շատ հետաքրքիր նյութեր էին հավաքել Երևանի մասին, հատկապես հին Երևանի մասին: Օհանյան Կարոն նույնիսկ գտել էր ցարական չինովնիկ Մորդովցևի գրածը Երևանի մասին. «Վատ տներ՝ կավե տափակ կտուրնե-



րով, կամ փողոցներ, կամ հրապարակներ, կամ արվարձաններ. ամբողջովին կավ ու կավ»:

Ահա թե ինչպիսին է եղել առաջներում մեր Երևանը:

Սովետական կարգերի հաստատումից հետո Երևանը սկսեց արագ վերակառուցվել: Մովսիսյան Վարազդատը գտել էր Մաքսիմ Գորկու հետաքրքիր խոսքերը, որը նա գրել է 1928 թվին, Երևանում եղած ժամանակ:

«Այո, ամենուրեք, Սովետական Միության բոլոր ծայրերում համարձակ ու մեծ նշանակություն ունեցող փորձեր են կատարվում, նոր կյանք է կառուցվում: Երբ մոտենում ես Երևանին, առաջինը, որ աչքի է զարնում, դա շինարարությունն է: Գորշ քարե քաղաքը, կարմրավուն ամպերի թագով ծածկված, արծաթագլուխ Արարատի մռայլ զանգվածի ֆոնին, հեռվից ինձ վրա թողեց փայտամածների վանդակի մեջ բանտարկվածի տպավորություն, որոնց վրա կարծես անմիջապես բիբլիական լեռան քարե զանգվածից բանվորների մրջնային ֆիգուրները նոր շենքեր են ծեփում»:

Այդպես էր 1928 թվականին: Հիմա փայտամածների փոխարեն կանգնած են հսկայական վերամբարձ մեքենաները, և տներ ավելի շատ են կառուցվում, քան այն ժամանակ: Այդ բոլորը մենք տեսանք այսօր, էքսկուրսիայի ժամանակ:

Կիրակոսյան Սոսը կարդաց Գվատեմալայի հայտնի գրող՝ Միգել Անխել Աստուրիասի նշագրումը Երևանի մասին՝ «Ես եղել եմ Հնդկաստանում և տեսել եմ վարդագույն Ջայպուր քաղաքը: Այստեղ, Երևանում, ես նորից հիացա վարդագույն քարով, որից կառուցված է ամբողջ քաղաքը: Նա լույսի հետ միասին քաղաքին տալիս է ժպտուն, երջանիկ տեսք»:

Մենք այնքան խոսեցինք Երևանի վարդագույն տուֆի մասին, որ որոշեցինք հաջորդ պարապմունքը նվիրել տուֆին:

ԱԼԱՎԵՐԴՅԱՆ ԱՐՄԵՆ

## 1959 թ. նոյեմբերի 29

Երեկ մենք այցելեցինք երկրաբանական թանգարան: Ճանապարհին ընկեր Պետրոսյանը պատմեց, որ Հայաստանի ողջ տերիտորիան ծածկված է եղել հրաբխային ժայթքումներից առաջացած լավայով ու մոխրով: Դրանցից էլ առաջացել են քարերը. ահա թե ինչու Հայաստանում այդքան շատ և բազմատեսակ քարեր կան:

Թանգարանում մեզ ամեն ինչ պատմում և ցույց էր տալիս գիտական աշխատողներից մեկը՝ բարձրահասակ, ակնոցավոր մի մարդ: Պարզվում է, որ տուֆը լինում է մոտ 40 տարբեր գույների ու երանգների: Հայաստանում կա երկու միլիարդ խորանարդ մետր տուֆ: Բացի այդ, Հայաստանը հարուստ է մարմարով, բազալտով և գրանիտով:

Շինարարները շատ են սիրում տուֆ քարը և այն ազնիվ շինանյութ են համարում: Տուֆը թեթև է, հեշտ է մշակվում, չի վախենում ջերմաստիճանի փոփոխություններից, խոնավությունից, միաժամանակ ջերմության ու ձայնի վատ հաղորդիչ է: Այս բոլորը շատ կարևո՛ր են շինարարների համար:

Հայաստանի տուֆը շատ լավն է, դրա համար էլ այդ քարը տանում են երկրի տարբեր ծայրամասերը: Արթիկի տուֆից կառուցված տներ կան Մոսկվայում, նրանից է կառուցված Դնեպրոգէսի մեքենայական դահլիճը, որը վերակառուցվել է պատերազմից հետո:

ՕՀԱՆՅԱՆ ԿԱՐՈ

## 1959 թ. դեկտեմբերի 6

Այսօր կայացավ խմբակի պարապմունքը՝ նվիրված Հայաստանի քարտաշներին: Ընկեր Պետրոսյանը պատմեց, որ հայ վարպետները շատ վաղուց են տիրապետել տուֆի մշակմանը և նրա վրա զարդաքանդակներ փորագրելուն: Հայ վարպետները ժամանակին հրավիրվել են Բյուզանդիա՝ տներ կառուցելու:

Քարտաշների վարպետությունը հաղորդվել է սերնդից-սերունդ: Ներկայումս մեր լավա-

գույն քարտաշները մեծ համբավ ունեն, նըրանցից մի քանիսին անգամ ընդունել են ճարտարապետների միության մեջ: Առաջինը այդ միության անդամ է ընդունվել վարպետ Քարամյան Հովհաննեսը, հետո վարպետներ Արգարյան Գևորգը և Ծախվերդյան Հովհաննեսը:

Վարպետ Հակոբյան Պողոսը, որն ընդամենը 13 տարի է, ինչ Բեյրութից վերադարձել է Սովետական Հայաստան, արդեն 2 անգամ ընտրվում է ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի դեպուտատ:

Կիրակոսյան Սոսն ասաց, որ ինքը գիտե, թե ինչ է ասել Հունգարական «Նեպսաբադշագ» թերթի գլխավոր խմբագիր Դեժե Նեմեշը: Այդ Սոսը, չգիտես, թե որտեղից, միշտ գտնում է օտարերկրացիների հետաքրքիր ասույթներ: Հունգարական ժուռնալիստները



մեզ մոտ եղել են 2 տարի առաջ: Պատվիրակության ղեկավար Դեժե Նեմեշը գրել է իր տպավորությունները Հայաստանի մասին, որտեղ կան այսպիսի տողեր՝ «Ձեր ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում մենք տեսանք շատ գեղեցիկ կառուցումներ: Հայ ժողովրդին կարելի է քարերին հաղթող ժողովուրդ համարել»:

Սրանով պարապմունքը վերջացավ:

ՄԻՐԶՈՅԱՆ ՍԵԴԱ

## 1959 թ. դեկտեմբերի 20

Այս պարապմունքը նվիրված է ճարտարապետությանն ու ճարտարապետներին: Առաջինը խոսեց Արմենը, որը զեկուցում էր պատրաստել ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանի մասին: Առաջ Թամանյանը ապրել և աշխատել է Մոսկվայում, խսկ 1923 թ. փոխադրվել է Հայաստան: Նա ուսումնասիրել է հայկական ազգային ճարտարապետության հուշարձանները և սկսել է կառուցել շենքեր, որոնցում արտահայտվել է ինչպես ազգային, այնպես էլ սոցիալիստական ոճը: Ճարտարապետ Թամանյանի նախագծերով կառուցվել են ինստիտուտներ, հիվանդանոցներ, բնակելի տներ, էլեկտրակայաններ, Կառավարության տունը, Օպերայի և բալետի թատրոնը: Կառավարության տան նախագծի համար Թամանյանն արժանացել է Ստալինյան մրցանակի, իսկ Օպերայի թատրոնի շենքի նախագծի համար Փարիզի միջազգային ցուցահանդեսում՝ Ոսկյա մեդալի:

Արմենից հետո ելույթ ունեցավ Միրզոյան Սեդան: Նա ասաց, որ շատ հետաքրքիր կառուցումներ են կատարում նաև Թամանյանի աշակերտներն ու հետևորդները: Նրանց շնորհիվ հիմա մենք ունենք հրաշալի Լենինի հրապարակը, Լենինի, Օրջոնիկիձեի, Ստալինի անվան գեղեցիկ պողոտաները, Բաղրամյան, Կիևյան, Կոմիտասի անվան նոր փողոցները, Հրազդան գետի վրա կառուցած հսկայական կամուրջը:

Հետո ձեռք բարձրացրեց Կիրակոսյան Սոսը, և բոլորը ծիծաղեցին, որովհետև գիտեին, որ նա հիմա կկարդա օտարերկրացիների մի նոր, հետաքրքիր գրառում: Այդպես էլ եղավ: Նա ասաց, որ երկու տարի առաջ Երևանում է եղել Չիլիի հայտնի գրող Պաբլո Ներուդան: Նրան Հայաստանը շատ է դուր եկել, իսկ Երևանի մասին նա գրել է.

«Ինձ վրա մեծ տպավորություն գործեց ռեսպուբլիկայի մայրաքաղաքի ճարտարապետական անսամբլը: Ինձ թվում է, որ ժամանակի ընթացքում Երևանը կդառնա աշխարհի ամենագեղեցիկ քաղաքներից մեկը»:

ՎԱՐԴԱՆՅԱՆ ՆՈՒՆԵ

## 1959 թ. դեկտեմբերի 27

Այսօր կայացավ Երևանին նվիրված վերջին պարապմունքը: Երեկ մենք եղանք Քաղսովետում: Այնտեղ մեզ պատմեցին շատ հետաքրքիր բաներ Երևանի շինարարության մասին և այն մասին, թե ինչպիսին կլինի մեր քաղաքը յոթնամյակի ընթացքում:

Երևանի բնակչությունը շատ արագ է աճում: Սովետական կարգերի հաստատման առաջին տարիներին Երևանն ընդամենը ունեցել է 30 հազար բնակիչ: 1939 թ. բնակչության թիվը հասել է 200 հազարի, իսկ այս տարվա մարդահամարի տվյալներով՝ 509 հազարի: Սովետական կարգեր հաստատվելուց հետո կառուցվել են շատ գործարաններ, բնակելի տներ և այլ շենքեր: Յոթնամյակի ընթացքում Երևանը կդառնա ավելի մեծ և գեղեցիկ: Գրեթե յուրաքանչյուր 2-րդ ընտանիք կստանա նոր բնակարան: Բնակելի շենքեր հիմնականում կկառուցվեն Ծաղումյանի շրջանում, որը գտնվում է քաղաքի հյուսիսային մասում: Հրազդանի վրայով անցնող կամրջից այն կողմ կկառուցվի օդային ճանապարհը, որի առաջին գծերը կմիացնեն քաղաքի կենտրոնական փողոցները նոր շրջանների և հանգստի վայրերի հետ: Կկառուցվեն «Հայֆիլմի» նոր կինոստուդիան, Պետական հանրային գրադարանի 2-րդ հերթը՝ 3 միլիոն գրքի համար, տպագրիչի տունը, Սունդուկյանի անվան թատրոնի շենքը:

Մեր հաջորդ պարապմունքը կկայանա նոր տարուց հետո և կնվիրվի երկու Լենինականին կամ Կիրովականին:

ԿԻՐԱԿՈՍՅԱՆ ՍՈՍ



# ՍՈՒՐԻԿԸ, ՄՈՒՐԱԲԱՆ ՈՒ ՁԻՆ

**Ն. ԶԱՐՅԱՆ**

Սուրիկը, Սեդիկը, պապան ու մաման ամառանոցից վերադարձան իրենց քաղաքի տունը։

Պապան գնաց Մոսկվա, իսկ մաման ամառանոցում պատրաստած մուրաբաները դրեց միջանցքում բարձր դարակի վրա, որ Սուրիկի ու Սեդիկի ձեռքերը չհասնեն։ Երբ Սուրիկն ու Սեդիկը ոտքները գետնին էին խփում, թե մուրաբա ենք ուզում, մաման հանգիստ ասում էր.

— Պապան Մոսկվայից կվերադառնա, մեր տուն հյուրեր կգան, նոր մուրաբայի ամանները բաց կանեմ։

— Ինչո՞ւ է մաման մուրաբան պահում հյուրերի համար,— բողոքում էր մտքում Սուրիկը։— Ինքն է պապայի հետ միասին անտառում մորի հավաքել, իսկ մաման մուրաբան հյուրերի համար է պահում։— Եվ Սուրիկը որոշեց այդ անարդարության դեմ շատ պինդ լաց լինել.— Ուղղո՜ւ, ուղղո՜ւ...

Բայց մամայի համառությունն ավելի պինդ էր։ Նա ասեց, որ եթե Սուրիկը մուրաբայի ամաններին ձեռք չտա, պապան նրա համար Մոսկվայից կբերի մի մեծ գեղեցիկ ձի։

Հետո մաման Սուրիկին պատվիրեց, որ քրոջը լավ նայի, չիջնի փողոց, տանը բան չփչացնի, և ամառանոցում գնած պայուսակն առավ ու գնաց շուկա։

Մամայի գնալուց հետո Սուրիկն անցավ գործի։ Նա մուրաբան իրե՞ն համար հո չի ուզում։ Սեդիկի համար է մտածում։ Ինքն արդեն մեծացել է և գալ տարի կհաճախի մանկապարտեզ։ Իսկ Սեդան փոքր է։ Նրան չի կարելի զրկել մուրաբայից։ Նա չի կարող սպասել, մինչև հյուրերը գան։

Եվ Սուրիկը միջանցքում դարակի առաջ աթոռ դրեց ու վրան բարձրացավ։ Բայց նրա ձեռքը չհասավ մուրաբայի ամանին։ Սուրիկը հիշեց, որ պապան վարագույրները կախելիս աթոռի վրա աթոռակ է դնում։ Ինքն էլ այդպես արեց և նրա ձեռքը, ուռռա՜, տեղ հասավ։ Նա մուրաբայի ամանը գրկեց և ուզում էր ցած իջնել, երբ աթոռակը տակին երերաց և Սուրիկը վայր թրմփաց ու կոտրեց մուրաբայի ամանը։ Նա դեռ ուշքի չէր եկել, երբ «վա՜յ» կանչելով ներս ընկավ մաման և Սուրիկին տուր, թե կտա.

— Վա՛յ, ես քո արևը թաղեմ, վա՛յ դու գետինը մտնես, ա՛ռ քեզ, ա՛ռ քեզ... ա՛ռ...

Սուրիկը վախից, թե մամայի դնգստոցից ուշաթափվել էր։

Երբ աչքերը բաց արավ, մաման գլխավերևում լաց էր լինում.

— Սուրիկ ջան, ո՞նց ես։ Աչքերս քոռանային։ Ձեռքերս կոտրվեին։ Շան բաժին դառնար մուրաբան։ Սուրիկ ջա՜ն...

Սուրիկը նորից աչքերը փակեց։ Գլուխը սաստիկ ցավում էր.

— Ո՜ւֆ...

— Վո՛ւյ, մերդ ցավդ տանի, Սուրի՛կ ջան,— լացակումած ասում էր մաման։— Պապադ գիշերը հեռախոսով Մոսկվայից հայտնեց, որ քեզ համար ձի է գնել, մե՜ծ, գեղեցիկ ձի։ Լավացի՛ր, որ ձիդ հեծնես, է՜, անուշ ջան։ Մուրաբա ածեմ, կուտե՞ս։

Սուրիկը հասել էր միանգամից երկու մեծ հաջողության. պապան նրա համար ձի էր գնել, մաման պատրաստ է մուրաբա տալ։ Ինչպես վարվի Սուրիկը. ձիու մասին բան հարցնի մուրաբան ուտելուց հետո՞, թե առաջ։ Բայց մաման թույլ չտվեց, որ նա երկար մտածեր։ Անմիջապես մի թեյի ափսե մուրաբա դրեց Սուրիկի մահճակալի մոտ, աթոռի վրա։ Սուրիկի բերանը դառն էր, բայց խփշտեց ամբողջ մուրաբան։

— Էլի բերե՞մ,— քնքշությամբ հարցրեց մաման։

Սուրիկն արդեն տեսնում էր, որ մաման մուրաբայի կռվում ընդմիշտ հաղթված է, ուստի որոշեց երկար մեծահոգի։

— Բա որ հյուրերին չմնա՞...

— Հորս ցավն ուտեն հյուրերը։ Դու կե՛ր, ինչքան սիրտդ կուզի։

Եվ Սուրիկը, ինչքան սիրտը կուզեր, մուրաբա կերավ ու քնեց։

Մյուս առավոտ նա զարթնեց առանց գլխացավի։ Բոլորովին առողջ։ Բայց պետք էր դեռ նազ գալ մամայի և Սեդիկի վրա։ Ուստի աչքերը նորից փակեց և սուտ նվաղելով ձայն տվեց.

— Մա՜...

— Ջա՜ն,— ուրախ, լացակումած պատասխանեց մաման։— Ինչ ես ուզում, Սուրի՛կ ջան։

— Իմ ձին, որ գնել է պապան, մե՞ծ է, թե փոքրիկ:

— Մեծ է, անո՛ւշ ջան: Մե՜ծ, մե՜ծ:

— Իսկական ձիու չա՞փ:

— Իսկական ձիու չափ:

— Որ իսկական ձիու չափ չեղավ, չեմ ուզում:

— Իսկական ձիու չափ է, իմ քա՜ջս: Դու միայն շուտ լավացի՛ր, որ հեծնես:

— Թո՛ղ բժիշկը չգա, որ լավանամ:

— Բժշկին էլ չեմ կանչի, Սուրիկ ջան: Իսկ դու մուրաբայով թեյ խմիր:

Սուրիկը մուրաբայով թեյ խմեց: Նրան շատ էր դուր գալիս, որ ինքը հիվանդ է և մաման ու Սեդան նրա գլխի շուրջը պտույտ են գալիս: Սեդան իր տիկնիկի հետ անգամ կամացուկ չէր խոսում, որ չխանգարի իր հիվանդ եղբորը:

Եվ Սուրիկը որոշեց երկար հիվանդ մնալ:

Բայց նա չկարողացավ իր որոշումը պահել:

Մյուս օրը ճաշից հետո արդեն հարևան երեխաների հետ միասին աղբարդկի ետևը մտած՝ նրանց պատմում էր, որ շուտով պապան Մոսկվայից իր համար կբերի մեծ, իսկական ձի:

թամբին: Սուրիկը լեղաճաք եղավ և բարձրացրեց այնպիսի ոռնոց, որ հարևան երեխաները ներքեվում իրար ձայն տվին.

— Տղե՜ք, Սուրիկը լաց է լինում:

Սուրիկը ձիու վրայից վայր թռմփաց ու փախավ ճաշասենյակ:

Սեդիկը, պապան ու մաման գնացին նրա ետեվից:

— Ինչո՞ւ ես վախենում, բալի՛կ ջան,—Սուրիկի գլուխն իր կրծքին սեղմեց և արծաթե զարդով նրա թուշը ցավացրեց մաման:—Դա քո ձին է: Պապան քեզ համար է բերել:

— Հապա ասում էիր, աքլորից քա՞ջ ես,—Սուրիկի վրա ծիծաղեց պապան:—Քաջ տղան ձիուց կվախենա՞:

— Մի՛ վախենա, Սույիկ,—ծլվլում էր Սեդան:—Խաղալիք է, հո իսկական չի՞...

— Ամո՜թ քեզ,—Սուրիկին հանդիմանեց պապան.—Սեդիկն իր աղջիկ տեղով չի վախենում ձիուց, իսկ դու վախենում ես:

Նա Սեդիկին գրկեց, պատշգամբ տարավ ու դրեց Սուրիկի ձիու թամբին: Սեդիկը ոչ միայն



Նկ. Ա. ՊԱՐՈՒՆԱԿՅԱՆԻ

Հանկարծ, իրոք, Սուրիկը լսեց պապայի ձայնը.

— Սուրի՜կ, որտե՞ղ ես: Տո՛ւն արի, քեզ համար ձի եմ բերել:

Սուրիկը վազելով տուն եկավ:

Բակի պատշգամբում թախտի վրա կանգնած էր ահագին սպիտակ մի ձի, պոչը երկար, աչքերը փայլուն, մորթին նախշած կարմիր-մոխրագույն բծերով:

Սուրիկը սարսափահար կանգ առավ:

— Քո ձին է, Սուրի՛կ ջան,—քաջալերեց մաման:—Հեծի՛ր:

— Չեմ ուզում,—իր վախը չուզեց խոստովանել Սուրիկը:

Պապան Սուրիկին գրկեց և դրեց ուղղակի ձիու

լեղապատառ լաց չեղավ, այլ ոտքերը թափահարում էր ու կանչում.

— Ձի եմ հեծե՜լ... ձի՛, ձի՛, ձի՛...

Սուրիկը շատ բարկացավ իր քրոջ հանդգնության վրա, վազելով մոտեցավ, մի հարվածով նրան վայր գլորեց իր ձիու թամբից և սկսեց լացախառն ոռնալ.

— Ուղղո՜ւ, ուղղո՜ւ... իմ ձին է, ես պիտի հեծնեմ:

Եվ մամայի օգնությամբ հեծավ իր ձին:

Սեդիկն այնքան ուրախացավ իր եղբոր քաջության վրա, որ մինչև անգամ չէր տզզում; Զնայած, որ ձիուց վայր ընկնելիս նա քիթը ցավեցրել էր:



Մի քիչ հետո եկան պապայի ընկերները, և մաման սեղան պատրաստեց առանց մուրաբայի։ Պապան իր ընկերներին պատմեց, որ Մոսկվայում երեխաներն ու նրանց մամաները նախանձով նայում էին Սուրիկի ձիուն և հարցնում էին, թե որտեղ կարելի է գնել այդպիսի ձի։ Իսկ պապան Սուրիկի ձին գնել էր շատ հեռու տեղից։ Մոսկվայից էլ ավելի հեռու՝ արվարձանից։ Ուրախությունից փախավ Սուրիկի ախորժակը, նա սեղանից վեր կացավ, գնաց պատշգամբ իր ձիու մոտ։

Այժմ, երբ Սուրիկը պատշգամբում ձիու հետ մենակ էր, սկսեց նորից վախենալ։ Բայց հիշեց, որ Սեդան չի վախենում, սիրտ առավ ու մոտեցավ։ Նա ամենից շատ վախենում էր ձիու պոչից։ Ջէր մոռացել, ինչպես ամառանոցում վարունգ ծախող քեռու ձին պոչը տարավ բերեց ու շրմփացրեց Սուրիկի երեսին։ Սուրիկի աչքերից կայծեր թռան, և մաման նրան տարավ բժշկի մոտ։ Բայց հիմա Սուրիկն արդեն քաջ էր, մոտեցավ և ձիու պոչը կամացուկ բռնեց։ Ուխա՜յ, հանգիստ կանգնած է։

Ոչ քթով փռշտացնում է, ոչ էլ պոչը շրմփացնում Սուրիկի դեմքին։ Սուրիկն ավելի քաջացավ և սկսեց իր ձիու պոչն ամուր քաշել։ Ինչքա՜ն պինդ է, չի պոկվում։ Սուրիկը որոշեց անպայման պոկել ձիու պոչը, որ նա Սուրիկին խփել սկի մտքովն էլ չանցկացնի։ Համ էլ պետք է տեսնել, թե պոչն ինչպես է կպել այնտեղ։

Սուրիկն ամբողջ պոչը միանգամից պոկել չկարողացավ։ Սկսեց պոկել մազերը ջոկ-ջոկ։ Շուտով ձին մնաց բոլորովին առանց պոչի։ Բացված անցքից այժմ թեփ էր դուրս գալիս։

Պոչը պոկելուց հետո Սուրիկն սկսեց հետաքրքրվել ձիու փայլուն աչքերով։ Տեսնես ինչ կա դրանց մեջ, թե՞ փ, թե արտասուք։ Եթե արտասուք է, բա ինչո՞ւ ձին լաց չեղավ, երբ Սուրիկը պոկում էր նրա պոչը։ Եվ Սուրիկը որոշեց իր ձիու աչքերն էլ հանել։ Բայց այդ գործը բավական դժվար դուրս եկավ։ Սուրիկի մատն ամեն անգամ սոթ էր տալիս, և ձիու աչքերը շարունակում էին անշարժ պսպղալ։ Սուրիկը հիշեց, որ պապան մի անգամ ճամպրուկի բանալին կորցրել էր և կողպեքը բաց արեց մեխով։ Նա խոհանոցի պահարանից բերեց այդ մեխը և ձիու երկու աչքն էլ հանեց։ Բայց աչքերի տակից ոչ թեփ դուրս եկավ, ոչ արտասուք։ Մնացել էին միայն երկու դատարկ անցք։

Այն ժամանակ պապան, մաման, Սեդիկը, հյուրերը ճաշը վերջացրել էին և դուրս եկան պատշգամբ։

— Վա՜խ, — կանչեց մաման՝ ձիու վիճակը տեսնելով։ — Էս ի՞նչ ես արել, անաստվածի՛ տղա։

Հյուրերը շատ բարձր ծիծաղեցին։

— Անպիտա՛ն, — Սուրիկի վրա այս անգամ բարկացավ նաև պապան։ — Ամբողջ ճանապարհին մտածում էի, թե դու ինչպես կուրախանաս այս գեղեցիկ ձիով։ Իսկ դու սկզբում լեղաճաք եղար, հետո էլ պոչն ու աչքերը հանեցիր։

Միանգամայն հասկանալի է, բարձր ծիծաղում էր Իսրայել քեռին։ Սուրիկը ցանկացել է իմանալ ձիու ներքին կառուցվածքը։ Կմեծանա, կդառնա ճարտարապետ։

Սուրիկը լավ գիտեր, որ հյուրերի մոտ ոչ պապան շատ կբարկանա, ոչ էլ մաման կդնգսի։ Դրա համար առանց վախենալու դիմեց պապային.

— Պա՜, սա իսկական ձի չէր։ Ես իսկական ձի եմ ուզում։

Մի շաբաթ հետո պապան Սուրիկի համար բերեց ոչ թե իսկական ձի, այլ մի մեծ, երկաթե խաղալիք, որ կոչվում էր «Կոնստրուկտոր»։



# „ԷՍ ՄԵՂԱՎՈՐ ՉԵՄ"



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*Ով որ անցնի մեր մայթով, անպայման կնկատի դատարկ ծառաստանը: Մեր մայթն այնպես կանոնավոր ու լայն է, ծառերի միջի տարածությունները այնքան հավասար են, իսկ ծառերը այնքան գեղեցիկ, որ այդ դատարկ տարածությունը ինչքան էլ ուզենաս չնկատել, չես կարող:*

*Բայց ամենավատն այն է, որ դատարկ ծառաստանը նկատելուց հետո, զարմացած անցորդները, չգիտես ինչու՞, մեր բակի կողմն են նայում: Մինչդեռ մեր բակի դիմացը իսկական հովանոցի նման մի ծառ կա, իմ աճեցրած ստվերախիտ ծառը: Ճիշտ է, դատարկ ծառաստանը մեր բակից հեռու չէ, բայց ես չեմ մեղավորը, որ այնտեղ ոչ ծառ կա, ոչ էլ ստվեր:*

*Դա Լևիկենց ծառն է:*

*Հենց դրա մասին եմ ուզում պատմել, որ այստեղով անցնելիս, մեր դռան կողմը չնայեք:*

* * *

*Անցյալ տարի, երբ ծառերը դեռ նոր էին տնկել, մի առավոտ ես նկատեցի, որ Լևիկենց տան դիմացի ծառը մի քիչ ծռվել է: Ո՞վ էր ծռել, չգիտեմ, բայց ես անմիջապես Լևիկի մոտ գնացի:*

*— Ի՞նչ կլինի, Սուրիկ ջան, դու ուղղիր,— խնդրեց նա,— ես հայոցս պիտի սովորեմ:*

*— Չէ՛, ես գործ չունեմ,— ասացի նրան,— հետո որ չբռնի, պիտի կարծես, թե մեղավորը ես եմ:*

*— Չեմ կարծի,— խոստացավ Լևիկը:*

*— Ինչու՞ ինքդ չես ուղղում,— հարցրի ես:*

*— Գործ շատ ունեմ, դու որ քո ծառը նայում ես, իմն էլ նայիր, քեզնից ի՞նչ է գնում:*

*Չնայած գիտեի, որ Լևիկը սովորություն ունի ուրիշներին գործի դնելու, բայց գնացի, ծառը ուղղեցի:*

*Մեր փողոցի բոլոր տղաները, ծառեր ջրող սով-*

ամերիկացի փարարդին հայտնել էին, որ իրենք են իրենց ծառերը ջրելու, այնպես որ ջրող մեկ-նումն էլ չէր գալիս։ Ամեն առավոտ, դպրոց գնալուց առաջ, ես ջրում էի իմ ծառը, իսկ Լևիկը չէր ջրում։ Ես նրան մի քանի անգամ նախազգուշացրի.

— Լևի՛կ, ծառը կչորանա։

— Սուրիկ ջան, քեզանից ի՞նչ է գնում, վաղը, որ քոնը ջրես, իմն էլ ջրիր։

Ջրեցի մեկ, երկու, երեք անգամ... բայց տեսնեմ Լևիկը ձայն չի հանում։

— Դե որ ջրում ես, ամեն օր ջրիր,—վերջապես ասաց նա։

— Էլ չեմ ջրի, հերի՛ք է ուրիշներին գործի դնես։

— Թե որ չջրես՝ դու ես մեղավոր։

— Ինչու՞,—զարմացա ես։

— Որովհետև մինչև այսօր ջրում էիր, իսկ հիմա չես ուզում ջրել։

— Իսկ ինչու՞ քո ծառը ես պետք է ջրեմ, ինչու՞ ինքդ չես ջրում։

— Ես ծառերի հետ գործ չունեմ, օդաչու եմ դառնալու։

Հայրիկը նրա համար կաշվե գլխարկ էր գնել։

— Ես էլ եմ օդաչու դառնալու։

Նա ծիծաղեց ինձ վրա ու ասաց, որ ինձանից օդաչու դուրս չի գա։

Ես շատ բարկացա ու նրա ծառը էլ չջրեցի։

Իսկ նա ամեն անգամ, որ հանդիպում էր ինձ, միշտ միևնույն բանն էր կրկնում.

— Այ, տե՛ս, եթե ծառը չորանի, դու ես մեղավոր։

Ճիշտն ասած, իմ սիրտը չէր տանում. մեկ-մեկ գիշերները, թաքուն նրա ծառը ջրում էի։

Մի գիշեր էլ, երբ դույլով նրա ծառի տակ ջուր էի լցնում, եկավ կանգնեց գլխիս։

— Բա ասում էիր չե՞մ ջրի։ Տեսա՞ր...

Դե ի՞նչ... պարզ է. նրա ծառը էլ չջրեցի։

Դու էլ ինձ նման չէի՞ր վարվի։

Գարնանը մեր փողոցի բոլոր ծառերը բողբոջներ տվեցին։ Լևիկի ծառը բողբոջ չտվեց։

Նա միայն այդ ժամանակ ձեռք ու ոտք ընկավ. օրական մի քանի անգամ սկսեց ջրել։ Բայց ծառը չորացավ։

Նա բարկությունից պոկեց չորացած ծառը, կոտրտեց, շպրտեց փողոցի մեջտեղը ու ամբողջ փողոցով մեկ տարածեց, որ մեղավորը ես եմ։

Հիմա ինքներդ ասեք, ես մեղավո՞ր եմ։ Տղաներից շատերը գտնում են, որ ես Լևիկի վրա ուշադրություն չպիտի դարձնեի ու պիտի խնամեի ծառը։

Նույնիսկ, եթե տղաների ասածը ճիշտ լինի, ես այնքան էլ մեղավոր չեմ։

# ՀԻՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ

### ՌԱՖԱՅԵԼ ԱԼԻԽԱՆՅԱՆ

Մի քանի օր առաջ թոռնիկս վերադարձավ տոնածառից և ոգևորված սկսեց պատմել, թե ինչպես են պարել ու երգել տոնածառի շուրջը, ինչպես է հայտնվել ձմեռ պապին ու բոլորին նվերներ տվել։

Ես ժպտալով լսում էի թոռնիկիս ու, չգիտես ինչու, հանկարծ հիշեցի մի դեպք իմ մանկությունից։ Հիշեցի, թե ինչպես առաջին անգամ տոնածառ տեսա։

Դա 1908 թվականին էր։ Այն ժամանակ Դիլիջանի այժմյան սովխոզի տերիտորիան և Կրճաքաշ կոչվող անտառամասը պատկանում էին վրացի իշխան Ճավճավաձեին։ Իշխանը շատ հարուստ էր. Բազմաթիվ այգիներ, հազարավոր գլուխ անասուն և անթիվ ծառաներ ուներ։ Հայրս էլ նրա խոհարարն էր։

Նոր տարուն ամբողջ Դիլիջանում միայն Իշխանն էր տոնածառ դնում, մեկ էլ փոստի պետը։ Մենք, երեխաներս միայն լսել էինք տոնածառի մասին, բայց պատկերացում չունեինք, թե դա ինչ բան է։ Նոր տարվա օրերին հենց միայն մեր չտեսած տոնածառի մասին էինք խոսում։



Թե ոնց էր պատահել, մի տարի Իշխանի կնոջ սիրտը խիղճ էր ընկել, նա հորս ասել էր, որ երեխաներին ուղարկի իրենց տուն տոնածառի։



Նկ. Հ. ՄԱՄՅԱՆԻ

Մեր ուրախությանը չափ չկար։ Մայրս մեզ զուգեց, զարդարեց, քրոջս հագցրեց իր մաշված չըստերը, իսկ ես հագա իմ նոր տրեխները։

Ճանապարհ գցելիս մայրս ասաց.

—Չմոռանաք համբուրել Իշխանի ձեռքը։

Նախ գնացինք հորս մոտ՝ խոհանոց։ Այնտեղից մի տղա մեզ տարավ վերի հարկը։ Շուտով ես իմացա, որ դա Իշխանի տաս տարեկան տղան է, և շտապեցի մորս պատվերը կատարել՝ կռացա և համբուրեցի նրա ձեռքը։

Վերի հարկի միջանցքում քույրս հանեց իր չըստերը և ստիպեց, որ ես էլ իմ տրեխները հանեմ։ Ես շատ դիմադրեցի, ուզում էի, որ Իշխանը տեսնի իմ նոր տրեխները, բայց ինչքան էլ դիմադրեի, ստիպված էի հրաժարվել նոր տրեխներից, քանի որ Իշխանի տան հատակը շատ մաքուր էր ու կարմիր ներկով ներկած, կարող էի կեղտոտել։

Դեռ ներս չէինք մտել, շեմքին երևաց մի մարդ, ուսերին պսպղուն բաներ կպցրած։ Գլխի ընկա, որ դա Իշխանն է և նորից քրոջիցս առաջ ընկնելով վազեցի, որ ձեռքը համբուրեմ, Իշխանը ձեռքը ետ քաշեց ու գլխիս կամաց խփելով ասաց.

—Դու հալա հում ես։

Հետո մենք մտանք դահլիճ և վերջապես տեսանք գեղեցիկ, փայլուն խաղալիքներով զարդարված տոնածառը։ Այդպես էլ մնացինք դռների մոտ կանգնած։ Բայց տոնածառից բացի զարմանալու ուրիշ շատ բան կար այնտեղ։ Մի կին նստել էր հսկայական սև արկղի մոտ ու մատներով խփում էր սպիտակ ատամների շարքին։ Դրանից երաժշտություն էր լսվում։

Քույրս, որ երկու տարով ինձանից մեծ էր և շատ բան գիտեր, ականջիս կամաց ասաց.

—Էս էլ սրանց զուռնան ա։

—Բա ինչի՞ ուստա Ակոբի զուռնայի նման չի,— առարկեցի ես։

Քույրս չպատասխանեց, նա զարմացած նայում էր, թե ինչպես զույգ-զույգ շարք կազմած, սև զուռնայի նվագի տակ մարդիկ պտտվում էին տոնածառի շուրջը։

—Վայ թե սա պար ըլի,—նորից բացատրեց քույրս։

Այդ ժամանակ մեզ մոտեցավ Իշխանի տղան և ասաց, որ մենք էլ պարենք։

Դե ի՛նչ, մենք էլ սկսեցինք պարել՝ քույրս ջեյրանի, իսկ ես՝ թարաքյամի։

Մենք պարում էինք, իսկ Իշխանի ընտանիքն ու հյուրերը ծիծաղում էին ու ծիծաղում։ Մենք չէինք հասկանում, թե ինչո՞ւ են ծիծաղում, բայց հետո, շատ հետո հասկացանք, որ նվագելիս են եղել վալս, իսկ մենք պարել ենք թարաքյամի ու ջեյրանի, հետո միայն իմացանք, որ սև, մեծ արկղ կոչվածը դաշնամուր է եղել։

Հիմա յուրաքանչյուր տուն տոնածառ է դնում և շատերի տանն էլ դաշնամուր կա, թոռնիկս ամեն նոր տարի պարում է տոնածառի շուրջը և իր փոքրիկ տեղով ջոկում է վալսը թարաքյամուց ու չի էլ իմանում, որ իր պապը տոնածառ չի տեսել իր անուրախ մանկության տարիներին։

Դուք էլ, երեխանե՛ր, երևի չգիտեիք, իմացեք։ Այսպես էր մեր երեխա ժամանակ։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

# ԺԱՄԱՆՑ

## ԳՐԱԿԱՆ ԳԱՂՏՆԱԳԻՐ




1. Պերճ Պռոշյանի վեպերից 5. 8. 5. 8. 3

2. Հ. Թումանյանի պատմվածքներից—9. 7. 6. 10. 3. 11

3. Րաֆֆու վեպերից – 1. 4. 14. 17. 7

4. Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի հերոսներից—4. 2. 4. 1. 7 .

5. Հերոս Ալ. Շիրվանզադեի «Երկատասարդ գվարդիա» վեպից—12. 16. 15. 14. 8. 13. 7. 13

Թվերը տառերով ճիշտ փոխարինելուց հետո շրջագծի հատվածներում դուք կկարդաք ռուս մեծ գրող Մ. Գորկու՝ գրքի վերաբերյալ մի ասույթը:

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՁԱՅՆԱՎՈՐ «Ն»

Ձայնավորի յուրաքանչյուր բառում պետք է լինի մեկ հատ «Ն» տառ.



1. Մետաղ. 2. Ա. Խաչատրյանի բալետը. 3. միութենական ռեսպուբլիկայի մայրաքաղաք. 4. Ալ. Շիրվանզադեի դրաման. 5. հայ հանճարեղ դերասանուհի. 6. ծաղիկ. 7. գետ ՍՍՌՄ-ում. 8. Հին Հայաստանի մայրաքաղաքը. 9. պետություն Ասիայում. 10. ռուս ծովակալ. 11. քաղաք Թուրքիայում. 12. բայի ժամանակ. 13. կոմերիտական թերթ. 14. խոշոր կենդանի. 15. զենքի հին տեսակ. 16. գույն. 17. ռուս երամարտիկ. ՍՍՌՄ 2-րդ սպարտակիադայի չեմպիոն. 18. հայ նշանավոր զորավարի անուն. 19. հայ փիլիսոփա. 20. լիճ Հայաստանում. 21. միրգ. 22. խնձորի տեսակ. 23. սովետահայ բանաստեղծ:

Կազմեց՝ Ֆ. ՏՈՆՈՅԱՆ


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐՍԶՅԱՆ Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ.. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա.. ՍԱՖՅԱՆ Պ.. ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.. ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2-11-83, 2-39-06:*

*ՎՖ 00730. Պատվեր 1395: Տպաքանակ 8100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 12 I 1960 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91:*

Գինը 2 ռ.

## ՆՈՐ ՏԱՐՎԱ ԽՆԴԻՐ






485—495 թվերը պետք է այնպես դասավորել այս պատկերի փոքր շրջանակներում, որ յուրաքանչյուր մեծ շրջանակի վրա գտնվող չորս թվերի գումարը կազմի նոր՝ 1960 թվականը:

Կազմեց՝
Ց. ՂԱՆԴԻԼՅԱՆ



### ԿԱՐՈ՞Ղ ԵՔ...

Առանց հեռացնելու թղթից մատիտի ծայրը, գծել այս պատկերը այնպես, որ մատիտը երկրորդ անգամ չանցնի գծերով:

Առաջարկ՝ Հ. ԲԱԴԱԼՅԱՆԻ

## Պատասխանում ենք

«Պիոներ» № 12

### ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ*—1. Աշխարհագրություն, 4. Դվինա 5. Կամա, 6. Բաստխ, 8. միրաժ, 11. Պո, 13. Արաքս, 15. արծիվ, 17. Զու, 19. Իրան, 21. Օր, 22. Բու, 24. Մարս:

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ*—2. Օշա, 3. Ջադ, 4. դահուկ, 7. Աբիխիրի, 9. Բուռ, 10. Ապարան, 12. Օկա, 14. Կարաչի, 16. ծով, 18. ազգություն, 20. Դոն, 23. Ուրալ, 25. սաթ:

### ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ

1. Յարոսլավլ, 2. Գորկի, 3. Կազան, 4. Կույբիշև, 5. Սարատով, 6. Ստալինգրադ, 7. Աստրախան:

### ՔՈ ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ

Քարտեզում նկարված լիճը Սևանա լիճն է, որը պատմական տարբեր ժամանակաշրջաններում կոչվել է նաև Գեղարքունի լիճ, Գեղամա ծով և Գյոկչա: Սևանա լիճը ծովի մակերևույթից բարձր է 1914 մ. և շրջապատված է՝ Արեգունի, Սևանի, Զանգեզուրի, Վարդենիսի ու Գեղամա լեռնաշղթաներով: Լիճը հարուստ է ձկներով, որոնցից նշանավորներն են՝ հռչակավոր իշխան ձուկը, կարմրախայտը, բախտակը, կողակը և սիգը: Մուրացանի «Գևորգ Մարզպետունի» վեպում հիշատակվում է Սևանի հետ կապված պատմական մի նշանակալից ու հետաքրքիր իրադարձության մասին: Սևանի մեջ թափվում են 30 գետ, իսկ դուրս է գալիս միայն մեկը՝ Հրազդանը, որի վրա կառուցված են 5 հիդրոկայան՝ Սևանգէսը, Քանաքեռգէսը, Գյումուշգէսը, Արզնիգէսը, Աթարբեկյանգէսը և կառուցվում է Երևանգէսը, որը կեզրափակի Սևան-Հրազդան կասկադը: Սևան-Հրազդանի ջրերով կառուցված են Ստորին Հրազդանի, Արզնի-Շամիրամի ջրանցքները, որոնք ոռոգում են Աշտարակի, Էջմիածնի, Արտաշատի և այլ շրջանների հողերը: Այժմ կառուցվում է նաև Կոտայքի ջրանցքը:

2 ռ.

9782

ՃԱՆԱՉՈ՞ՒՄ ԵՔ

ԱՅՍ ՀԵՐՈՍՆԵՐԻՆ

Այս նկարների ու վանդակներում եղած տառերի օգնությամբ գտեք նկարների հեղինակների ազգանունները և գրեք սյունակներում:




















Առաջարկ՝ Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ